# ԳԱՐՈՒՆ ԵԿԱՎ

ՄԻՔԱՅԵԼԵ ՌԱՇԻԴ

Ձնծաղիկով ու ծիծաղով,
Հորդ ջրերի կանչ ու խաղով,
Ճամփաներով ծանոթ ու հին
Գարուն եկավ մեր աշխարհին։

Արևը տաք օրեր բերեց,
Հողը անուշ-անուշ բուրեց,
Իսկ կոլխոզի մեծ ֆերմայում
Քաղցր ձայնով գառը մայեց։

Ձյունն է հալվում բարձր սարում,
Ցածում արդեն արտ են վարում.
Դեռ նոր ծլած թարմ կանաչում
Ոչխարի հոտն է արածում։

Շուտով, շուտով հեռուներից՝
Օտար հողից ու վայրերից,
Թռչունները շարվե-շարան
Կգան մեզ մոտ նամփով գարնան։

Իսկ մինչև այդ մի ժիր ծիտիկ՝
Ճստիկ-պստիկ, կարմիր տոտիկ,
Ծլվլում է ու դայլայլում,
Զքնաղ գարնան գովքն է անում։




Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

№ 3 1959 թ.
ՄԱՐՏ



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
31-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

# ՁԵՐ ԱՄՍԱԳԻՐԸ



Լեռնային բարձր շավիղներով, խուլ կածաններով դեպի ալպիական արոտներն են մագլցում որսորդական հրացաններով զինված մի քանի հոգի։ Ահա նրանք անցնում են անտառի միջով և թփուտներում վարազի ոտնահետքեր են նկատում։ Բայց հետքերն ի՞նչ են որ։ Հետքեր նրանք վաղուց են նկատել և ինչքան ժամանակ է փնտրում են՝ վարազներ չկան։

Խորամանկ կենդանի է վարազը։ Նա այնքան էլ շուտ չի մատնի իր տեղը հրացանավոր մարդուն, բայց դե Վախթանգ Անանյանն էլ տարիների փորձ ունի։ Հա՛, պետք է ասել, որ վարազի հետքերով գնացողների մեջ է նաև ձեր սիրելի գրողը։ Ահա նա՝ հրացանը ձեռքին, որսորդական կարճ բաճկոնը հագին, զգուշությամբ մի թփից մյուսն է անցնում։ Նա այս պահին որսորդ է, միայն որսորդ, բայց հենց այստեղ էլ սկսում է այն հետաքրքրաշարժ պատմվածքը վարազի որսի մասին, որ դուք կկարդաք այս համարում։ Կընթերցեք ու ձեր ընկերներին կասեք. «Կարդացե՛ք Անանյանի «Փորձված միջոց» պատմվածքը, շատ լավն է»։ Հետո կխոսեք Նիկոլայ Քոթանջյանի նկարազարդումների մասին, բայց դուք չեք հիշի նրանց, այն բազմաթիվ մարդկանց, որոնք աշխատել են, որպեսզի Անանյանի պատմվածքն ու Քոթանջյանի նկարները հասնեն ձեզ։

Ձեզանից շատերը գիտեն, թե ինչպես են գրքերը տպագրվում։ Սկզբում գրաշարները արճճե տառերից բառեր են կազմում, հետո տողեր ու ամբողջ էջեր, ապա այդ էջերն էլ մեքենայի տակ գցելով գիրք են տպագրում։ Այսպես տպագրել են շատ վաղուց, բայց հիմա բոլոր գրքերը չեն, որ այդպես են տպագրվում, հատկապես ձեր գրքերը, երեխաներ։ Չէ՞ որ ձեր գրքերը պետք է ավելի գեղեցիկ լինեն, գունավոր նկարներով, իսկ այդպիսի մի գիրք հին ձևով եթե տպագրելու լինեն, շատ ժամանակ կխլի և այնքան էլ գեղեցիկ չի լինի։ Ձեր ամսագիրը նույնպես մի գիրք է, և հարկավոր է, որ դուք ամեն ամիս ստանաք նրա համարները, ուշացնել չի կարելի։ Այդ է պատճառը, որ «Պիոները» տպագրում են ամենալավ մեքենաների վրա, որոնք օվսեթ են կոչվում։ Դա սովորական տպագրություն չէ։

Ամեն ինչ դարձյալ սկսվում է այն փոքրիկ, արճճե տառերից։ Վարպետ Ֆոլիկ Տոնոյանը վերցնում է Անանյանի պատմվածքն ու շարում։ Շարում է ուշադիր, խնամքով։ Մյուս նյութերն էլ շարում են ուրիշ գրաշարներ, և երբ շարվածքը լրիվ ավարտվում է, խմբագրությունից ստացված մակետի համաձայն, վարպետ Ֆոլիկը էջերն է կապում։ Հետո մի քանի անգամ սրբագրում են սրբագրիչները, և հայտնաբերած սխալները վարպետն ուղղում է նաև արճճե էջերի վրա։ Իսկ ցեխի վարիչ Ցոլակը ակնոցներն աչքերին հետևում է բոլոր գրաշարներին, որպեսզի գործն ավելի լավ կատարեն։ Նա շատ հին վարպետ է և միշտ ասում է. «Պետք է ուշադիր լինել, չէ՞ որ սա երեխաների համար է»։



Բայց եկեք գրաշարներին թողնենք այստեղ և գնանք մյուս ցեխերը։ Ահա վարպետ Նահապետը լուսանկարում է ամսագրի նկարները։ Դուք գիտեք, որ նկարիչը ձեռքով է նկարում և միայն մի օրինակ։ Ինչպե՞ս անել, որ այդ նկարից բոլոր երեխաներն էլ ստանան։ Ա՛յ, հենց դրա համար էլ լուսանկարչական ապարատ գոյություն ունի։ Միանգամայն թե այստեղի ապարատը ձեր իմացած ապարատներից մի քանի անգամ ավելի մեծ է։ Գունավոր նկարները մի քանի անգամ են նկարում, ամեն գույնի համար մի նեգատիվ-թաղանթ։ Ինչպես գիտեք, լուսանկար ստանալու համար նեգատիվ-թաղանթից տպագրում են թղթի վրա, բայց այստեղ այդպես չէ։



Ահա այն մարդիկ, որոնք երեսուն տարի առաջ սկսեցին տպագրել «Հոկտեմբերիկը»։ Վիմագրական քարի վրա նկարված են առաջին համարներից մեկի էջերը։ Այստեղ հավաքված են (ձախից աջ) նկարիչներ՝ Տ. Խաչվանքյանը, Հ. Հովհաննիսյանը, Ա. Ղարիբյանը, Ան. Մխիթարյանը, Ա. Սարգսյանը, փոխադրող վարպետ Ա. Սաթրջանյանը, նրա աշակերտը, նկարիչ Ա. Մամաջանյանը և ցեխի վարիչ Մ. Գրիգորյանը։

Նախքան տպագրության տանելը, այդ նկար-թաղանթները երկար ժամանակ մշակվում են։ Դրա համար տպարանում նկարիչ-ռետուշյորներ կան։ Ահա նրանցից Անուշավանը, Ջենոնը, Գևորգը, Լյուսյան, Վանիկը և մյուսները՝ խոնարհված հատուկ հարմարանք ունեցող սեղանների վրա, ռետուշ են անում։ Նրանք մաքրում են ամեն մի ավելորդ գիծ, ավելորդ կետ, որպեսզի նկարներն ավելի ճիշտ լինեն։ Դուք ամսագրում կանաչ, մանուշակի, նարնջի գույներ եք տեսնում, բայց տպագրելիս այդպիսի ներկեր չեն օգտագործել։ Այդ նկարիչ-ռետուշյորներն են որոշում, թե ինչքա՞ն դեղին պետք է խառնվի կապույտին, որ կանաչ ստացվի, կամ կարմիր՝ դեղինին, որ նարնջագույն ստացվի և այլն։ Նրանք շատ են չարչարվում ձեզ համար։ Բայց դուք չկարծեք, թե ներկերն են իրար խառնվում տպագրության ժամանակ. ոչ, թղթի վրա առաջ տպագրվում է դեղին գույնը, հետո վրան գալիս է կապույտը և ստացվում է կանաչ։ Դրա համար նկարիչ-վարպետները պետք է լավ իմանան, թե որ ներկից ինչքան պետք է լինի։



*Ահա և ցեխի վարիչ Ցոլակ Զախալյանը*

Բայց մենք թողեցինք մեր պատմվածքներն ու ոտանավորները գրաշարական ցեխում, գնանք տեսնենք, թե ի՞նչ եղան նրանք։ Բանից պարզվում է, որ այդ միջոցին, շարվածքն արդեն իջեցրել են տպագրական ցեխ։ Ինչքա՜ն շատ մեքենաներ կան այդ ցեխում։ Նրանք անընդհատ աշխատում են՝ միալար ու ախորժալուր մի աղմուկ տարածելով շուրջը։ Բայց այս ի՞նչ վեն է։ Դա ցեխի վարիչ ընկեր Սիմոնն է, որ վիճում է մեկի հետ։ Կարծես թե նա հրաժարվում է տպագրել ձեր ամսագիրը, ավելի ճիշտ՝ հրաժարվում է այսօր տպագրել «Հո-



լոր մեքենաներն զբաղված են, - ասում է նա,— հո չե՞մ կարող մեքենայի տակից գիրքը հանել և դա գցել»։

Տեսեք, նրա պատճառով հնարավոր է, որ դուք մի երկու օր ուշ ստանաք ամսագիրը։ Բայց վարպետ Սիմոնը բարի է. նա թույլ կողմ ունի, և գլխավոր ինժեներ ընկեր Մատինյանը հենց այդ թույլ կողմից էլ բռնացնում է. «Ընկեր Սիմոն, մի մոռացեք, որ սա երեխաների համար է»։

— Լավ, լավ, կգցեմ, —ասում է ցեխի վարիչն ու դուրս գալիս ինժեների առանձնասենյակից։ Եվ նա սկսում է տպագրել։ Դուք երևի կզարմանաք, տեսնելով, թե ինչպես են տպագրում ամսագիրը։ Երևակայեցեք, միայն մեկական օրինակ։ «Ինչպե՞ս, բա մնացած յոթհազար «Պիոները»— կհարցնեք դուք։ Ամեն ինչ, սակայն, նիշտ է արվում։ Մեկական օրինակ է տպագրված, բայց տեսեք, թե ինչ թղթի վրա՝ դա կավճապատ, փայլուն թուղթ է։ Դրանց վրա տպագրված էջերը զգուշությամբ բարձրացնում են նորից լուսանկարչատուն։ Այստեղ էջերը դարձյալ լուսանկարվում են։ Եվ ահա ամբողջ տեքստը տեղափոխվում է թաղանթի վրա։ Հիմա արդեն կարելի է շարվածքը ցրել։ Մի զարմացեք։ Քիչ հետո ամեն ինչ կհասկանաք։



Կարծում եք միշտ այսպես բարի է
Ազիզ Մամիկոնյանը



[illegible]

* * *

Մեծ, ապակեպատ սեղանի վրա կռացել է մի երիտասարդ տղա։ Նա վերցրել է մի մեծ, թափանցիկ թաղանթ, դրել սեղանին և ինչ-որ չափումներ է անում։ Ապակու տակ դրված սպիտակ թուղթը ութ հավասար մասերի է բաժանված։ Ահա նա վերցնում է կողքին դրված թաղանթներն ու մկրատով կտրատելով կպցնում մեծ թաղանթին։ Բայց թաղանթների վրա նկարներ կան։ Դե, իհարկե, դրանք «Պիոների» նկարներն են։ Ահա և պատմվածքներն ու բանաստեղծությունները՝ նույնպես թաղանթների վրա։ Երիտասարդ վարպետը, որի անունը Ժիրայր է, կպցնում է տեքստերն ու նկարները այդ մեծ թաղանթի վրա։ Մնում է, որ ծալես, ծալծըլես և կստացվի «Պիոների» ութ էջը։ Հետո նա այդ թաղանթի վրայի նկարները և տեքստը հատուկ լուսավորության միջոցով փոխանցում է ցինկի վրա։ Այսպես, Ժիրայր Բալյանը քսան անգամ նույն բանը կրկնում է։ Ամեն մի գույնի համար մի այդպիսի մեծ ցինկի թիթեղ է պատրաստում, որից հետո արդեն ձեր ամսագիրը պատրաստ է լինում տպագրության։

Սակայն ի՞նչ է դուրս գալիս։ Այսքան ժամանակ է անցել, և դեռ ամսագիրը պատրաստ չէ։ Այո՛, ամիսն էլ արդեն վերջանում է, իսկ չէ՞ որ ամսի



*Պակաս լուրջ չէ նաև Ժիրայր Բալյանը:*
*Չէ՞ որ նա էլ Թոլիկի պես հիմա աշխատում է։*

25-ին ամսագիրը պետք է պատրաստ լինի։ Ի՞նչ անել։

Օֆսեթի հսկայական ցեխում, փոքրիկ սեղանի առաջ նստած է հաստ հոնքերով մի մարդ։ Դա ցեխի վարիչ Ազիզ Սամիկոնյանն է։ Լավ նայեք այս մարդուն, երեխաներ, և այն նամակները, որ դուք խմբագրություն եք ուղարկում ամսագրի վատ տպագրության և ուշացման համար, սրանից հետո ուղարկեք նրան։ Նրա հասցեն մեր ամսագրի վերջին էջում միշտ լինում է։ Տեսե՞ք, թե նա ինչպես է իր հաստ հոնքերի տակից նայում։ Չկարծե՞ք, թե նա չար մարդ է. ոչ։ Նա նույնիսկ ասում է, որ ձեզ շատ է սիրում։ Ասենք, դա մեկ-մեկ երևում է, երբ «Պիոները» լավ է տպագրված լինում և ժամանակին է դուրս գալիս։ Բայց ախր, չէ՞ որ միշտ այդպես չի լինում։ Հաճախ էլ ուշանում է։ Հավատացեք, որ այս համարը չի ուշանա։ Տեսեք, թե ինչպես է ընկեր Սամիկոնյանն աշխատում դրա համար։ Նա դիտողություն է անում տպագրիչներին.

— Այսպես չի կարելի. կարմիրն ուժեղացնել, դեղինը թուլացնել։ Ա՛յ, այսպես,— և նա մատը թաթախելով ներկի մեջ խփում է թղթի վրա այնքան, մինչև ստացվում է ցանկացած երանգը։ Լավ մասնագետ է Ազիզ Սամիկոնյանը, երեխաներ, և եթե ձեզանից ոմանք դպրոցն ավարտելուց հետո գնան նրա մոտ աշխատելու, նա ձեզանից որակյալ վարպետներ կպատրաստի։ Ահա օվսեթի ցեխում են աշխատում երիտասարդ տպագրիչները. նրանք բոլորը Ազիզից են սովորել իրենց գործը։

Աշխատում են օֆսեթի տպագրական մեքենաները, և «Պիոների» պատրաստի մամուլները բարձրանում են ուրիշ ցեխեր՝ ծալվելու, կազմվելու համար։ Երկու օրից հետո, Սոյուզպեչատի ավտոմեքենան կգա տպարան և ամսագիրը կապոցներով կտանի կայարան, այնտեղից էլ կուղարկվեն ձեզ։

Դուք վերցնում եք ամսագիրը և զարմացած նայում շապիկին. այս ի՞նչ է, նկարները կարծես թե ծանոթ են։ Դե, իհարկե, շապիկի վրա տպագրված են «Պիոների» լավագույն շապիկ-նկարները, ամսագրի գրադարանի գրքերը։ Իսկ մեջտեղի շեղակի մեծ նկարը ձեզ ծանոթ չէ, բայց դա «Հոկտեմբերիկի» առաջին համարն է, որ տպագրվել է ուղիղ 30 տարի առաջ։ «Պիոները» չէ՞ որ նույն «Հոկտեմբերիկն է»։ Միայն անունն է փոխվել։

Ձեր ամսագիրը երեսուն տարեկան է դարձել արդեն։ տեսեք, թե նա ինչքա՜ն է մեծացել ու սիրունացել։ Իսկ միջի նուտիկը՝ հոկտեմբերիկների համար, ինչքա՜ն լավն է։ Այսպես, մեր պարտիան ու կառավարությունը ձեզ համար ամեն ինչ անում են, որ դուք լավ գրքեր ու ամսագրեր ունենաք, որպեսզի լավ սովորեք և պիտանի մարդ դառնաք։

*Ճեպանկարները՝ ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*





# ՓՈՐՁՎԱԾ ՄԻՋՈՑ

Վ. ԱՆԱՆՅԱՆ

Անտառից փայտ բերող կանայք մեզ ասացին, որ իրենք վարազներ են տեսել Գետաթաղի վերին թփուտներում:

— Կանգնել մեզ էին նայում տանու խոզերի պես,— պատմում էր գյուղացի մի պառավ:

— Որ էդպես է՝ գնանք, մեր ձեռքից չեն պրծնի,— ոգևորվեց կոլտնտեսության նախագահ Գրիգորը:

Իսկ ես, որ լավ ծանոթ եմ վայրի խոզերի բնավորությանը, ինձ ու ինձ քմծիծաղ էի տալիս... Տանու՜... լավ տանու կենդանիներ են վարազները... Անզեն կանանց մոտ, իհարկե, «տանու» կերևան:

Բայց դե որ վարազներ էին երևացել, հո չէի՞նք կարող հանգիստ մնալ. իսկույն վերցրինք մեր զենքերը, հեծանք ձիերը և թռնեցինք կանանց ցույց տված ուղղությամբ: Կոլտնտեսությունը հավաքել, տեղավորել էր առատ բերքը, այնպես, որ գյուղի աշխատողները կարող էին երբեմն էլ զվարճանալ որսորդությամբ:

Մեծ չէր մեր խումբը. ես էի, նախագահ Գրիգորն էր, ֆերմայի վարիչ Գարեգինը, մի պատանի՝ ձիերին հսկելու համար և շրջանում լավ որսորդի համբավ հանած միլիցիայի լեյտենանտ Հակոբը:

Գետաթաղը Դարբաս գյուղից վերև է, Սիսիանի շրջանի Լորի ձորում: Ձորն ի վեր, լեռներից իջնող գետակի ափին շարված են ոչ մեծ գյուղեր: Նրանցից վեր նոսր կաղնուտներ են ու թփուտներ, իսկ ավելի վեր՝ ճերմակ գագաթներով մերկ լեռներ:

Վերելքը դժվար էր, ձիերը քրտնել էին: Անտառի գոտին մտնելուն պես՝ որոշեցինք ձիերը թողնել մի ձորակում, իսկ իրենքս սկսեցինք մագլցել դեպի վեր, ուր վերջանում է անտառը և սկսվում են լեռնային արոտները, ուր տեղ-տեղ վեր են ցցվել թփերով պատած ժայռերը: Պարզ է, որ վարազները կլինեն այդ անմատչելի ծերպերում:

Հասանք մի նոսր կաղնուտ, ուր ձյունը դեռ նստած էր տեղ-տեղ ընդհատվող բարակ շերտերով: Եվ ահա ձյան վրա մի վարազի բոլորովին թարմ հետք: Հակոբը գլխարկով մեզ կանչեց իր մոտ, ձեռքը շրթունքին դրած՝ հայացքով ցույց տվեց խոզի հետքը և անձայն հասկացրեց, թե՝ տեսեք, ցերեկով է ման եկել, ձնհալի ժամանակ, ուր որ ոտքը դրել է, ջուրը դուրս է ցցել...

Հետքով հասանք մի նոր թփուտի: Շատ փնտրեցինք՝ ոչինչ չերևաց:

«Թը՜ռ-ռ», վայրի հավերը մեր գլխի վրայով անցան և իջան ժայռի դարավանդին, մեզանից քիչ հեռու: Հակոբը չհամբերեց և կրակեց հավերի վրա: Դե, այս կրակոցի հետ էլ, եթե խոզը չերևաց, ուրեմն մեր գալուց առաջ հեռացել է. իզուր ենք ժամանակ կորցնում, գնանք:

Շատ քրտնեցինք, շատ չարչարվեցինք այդ օրը, բայց խոզի չհանդիպեցինք:

— Երևի կերի համար տեղափոխվել են Տաթևի անտառ,— կարծիք հայտնեց Գարեգինը:

— Իսկ իմ կարծիքով, խոզերը հենց մեր քթի տակ են, թավուտներում թաքնված: Պառկում են մի թփի տակ, ու ականջների տակին հրացան էլ կրակես, չեն շարժվում. ես դրանց գիտեմ,— ասացի ես:

Չառարկեցին, բայց զգում եմ, որ քաղաքավարությունից են լռում, երևի մտքներում ասում են. «Գրքերում կարդացած կլինի»...

Արևն անցնում էր լեռների հետևը. օրը ցրտում էր. ստիպված պիտի գյուղ վերադառնայինք:

Վերադարձին անցնում էինք այն թփուտի մո-

տով, ուր անհետացել էր խոզի հետքը։ Այս ի՞նչ է, Գարեգինը նորից սկսեց գլխարկով կանչել մեզ. բա՞ն է նկատել, թե՞ նորից դեմ է առել առավոտյան հետքին։ Նրա նշանով Հակոբը մտավ թփուտը և, մի քանի վայրկյան անց, այնտեղից դուրս փախավ մի սև վարազ։ Նա, որ ամբողջ օրը պառկել էր թփի տակ և հրացանի կրակոցից անգամ չէր շարժվել, որպեսզի իր տեղը չմատնի, այժմ խելակորույս կերպով փախչում էր։ Վարազի այդ վարմունքը պարզ էր մեզ համար. փոխել է «տակտիկան», գիտի, որ մատնվելուց հետո միակ փրկությունը ոտքերի մեջ է. բայց դե ո՞ւր պիտի գնար։ Երբ հրացանն միաբերան որոտացին, և կենդանին շանթահարված ծալ եղավ ու շուռ եկավ մեջքի վրա։

Սպանված կենդանուն չորացրած տերևների վրայով քարշ տվինք մինչև գյուղ և սկսեցինք խորովածի պատրաստության [illegible]։

Մինչ խարույկը վառվում էր, գյուղի պատանի բնակիչները շուրջս հավաքված՝ հարցուփորձ էին անում որսի մանրամասնության մասին։ Նրանք զարմանում էին, թե այդ ինչպես է, որ նույնիսկ «ականջի տակ» կրակելուց հետո վարազը դուրս չի եկել իր թաքստոցից։ Եվ ես նրանց ասացի այն եզրակացությունը, որին հանգել եմ իմ երկարամյա որսորդական փորձով. քանի դեռ չես նկատել՝ վարազը տեղում սեղմվում է։ Բայց երբ զգաց, որ մատնվել է, դիմում է կյանքը փրկելու մյուս միջոցին՝ խելակորույս վազքին... Պրծա՞վ, այլևս հույս չունենաս, որ կանգ կառնի։ Մնում է, որ կրակելու շնորհքդ փորձես վազքի պահին։



Նկ. Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ



# Տիգրանիկի նվերը

Գ. ԲԱՆԴՈՒՐՅԱՆ

Եկավ գարնան արևը տաք.
Էլ ձյունը ձյուն չմնաց։
Տիգրանիկը դուրս եկավ բակ՝
Փոքրիկ իր բահը բռնած։
Թաց հողի մեջ բահը խրեց
Ու դուրս-նանեց մի զուռդ կավ.
Իր թևերը վերև քշտեց
Եվ ժիր՝ գործի նա անցավ։
Ծեփեց, կոկեց նա անդադար,
Շինեց և՛ պոչ, և՛ ոտքեր.
Ահա գլխիկ, ահա կատար.
Այս էլ կտուց՝ փոքր ու կեռ...
Հետո աչքերը կլորիկ,
Հետո էլ՝ չանչ ու փետուր...
Ու ձեռքն առած մի աքլորիկ՝
Ուրախ-ուրախ վազեց տուն։
Տարավ, դրեց լուսամուտին
Աքլորիկին իր սիրուն.
— Մայրի՛կ,—կանչեց,—մարտի ութին,
Տես, ի՞նչ եմ քեզ նվիրում.
Մայրը ժպտաց, գրկեց որդուն
Ու համբուրեց սիրալիր.
— Ավելի լավ նվեր կյանքում՝
Չե՛մ ստացել, իմ բալիկ։

Նկ. Ս. ՍԱՖՅԱՆԻ

# ՋՎԱՐԹ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

ՄԿՐՏԻՉ ԱՐՄԵՆ

Նկ. Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

Մեծ դասամիջոցին, դպրոցի ընդարձակ բակում մի մեծ շրջան կազմած, կանգնել էին բոլոր դասարանների աշակերտները,— բոլորը առանց բացառության։ Կանգնել էին նաև բոլոր ուսուցիչ-ուսուցչուհիները՝ նույնպես առանց բացառության։ Չէր լսվում ոչ մի ձայն, չէր նկատվում ոչ մի շարժում։ Բոլորը նայում էին դեպի շրջանի կենտրոնը։

Այնտեղ, շրջանի կենտրոնում, երկու պիոներ փորում էին մի նեղ փոս, երրորդը կանգնել էր՝ մի երկար ձող ձեռքին, իսկ չորրորդը կարգադրություններ էր անում։

Գետնի վրա, պիոներներից ոչ հեռու, լրագրով փաթաթված, դրված էր ինչ-որ երկարավուն առարկա։

Երբ փոսն արդեն պատրաստ էր՝ հարկ եղած խորությամբ, չորրորդ պիոները, որ յոթերորդ դասարանի աշակերտ Կարեն Ավագյանն էր, գրպանից հանեց մի փոքրիկ կծիկ թել և ձայն տվեց.

— Եկեք ամեն դասարանից մի-մի հոգի՝ առաջ։

Ապա նա գրպանից հանեց սանտիմետրը և չափեց թելը։

— Տասնվեց մետր,— բարձրաձայն հայտնեց բառուգոյներից մեկը։

— Ընկեր Թորոսյան,— դիմեց Կարենը երկրաչափության ուսուցչին,— ի՞նչ երկարության շրջան կստացվի այս թելի առանցքի շուրջը, այսինքն՝ ձողի շուրջը։

— Պարզ է, հարյուր մետր,— ժպտաց ուսուցիչը։

Կարենը թելի ծայրին կապած երկաթե օղակը հագցրեց ձողի ծայրին ամրացված բռնակի վրա, որից հետո ձողը տնկեց փոսի մեջ։ Մյուս պիոներները հողով ու քարով լցրին փոսը, և ձողն ամուր կանգնեց—մնաց բակի մեջտեղում։

— Ազատ եք,— ասաց Կարենը պիոներներին։

Մենակ մնալով մարդկանց շրջանի մեջ, նա կռացավ, գետնից վերցրեց լրագրի փաթեթը և բաց արեց։ Չորս կողմից լսվեցին հիացմունքի բացականչություններ.

— Կարծես իսկական լինի։

— Շատ գեղեցիկ է։

— Ինչ որ «Տու—104»։

Միայն մեկը՝ նույն յոթերորդ դասարանցի Միհրան Դանիելյանը, ասաց քթի տակ, բայց այնպես, որ ուրիշները լսեն.

— Այն ժամանակ կլինի Տու, երբ անի տու-տու…

Եվ թերահավատորեն ծամռեց քիթը։

Նույն այդ ժամանակ Կարենն իր ռեակտիվ ինքնաթիռը կապեց թելի ծայրին, հետո ինչ-որ բան արեց, որ մարդիկ չնկատեցին, որից հետո լսվեցին այնպիսի հնչյուններ, կարծես իսկապես, նա իսկական ինքնաթիռ էր բռնել իր ձեռքում։ Կարենը հետ-հետ վազեց այնքան տեղ, մինչև որ թելը ձգվեց, ապա նա վեր նետեց ինքնաթիռը։

— Հաշվեցեք,— բղավեց նա այնպես, որ բոլորը լսեն։

Ինքնաթիռն սկսեց պտույտներ անել ձողի շուրջը։ Բոլորը, ուրախացած, որ դա միայն փայտե խաղալիք չէ, այլ թռչում է, աչքերով հետևում էին ինքնաթիռի մոդելին, և երբ նա անցնում էր իրենց առջևով, հաշվում էին կիսաձայն.

— Ութ… ինը… տասը… Ուրեմն՝ մի կիլոմետր։ Տասնմեկ… տասներկու…— Մի շատ փառգիծ ուներ Միհրան Դանիելյանը։ Նա էլ էր տեսնում ինքնաթիռը։ Նա էլ էր հաշվում դրա պտույտները, բայց դեմքի այնպիսի մի արտահայտությամբ, կարծես այդ բոլորը սուտ էր, կամ ինչ-որ խաբեություն կար այստեղ, և նա պատրաստվում էր ապացուցել այդ սուտն ու բաց անել խաբեությունը։

— Արդեն հինգ կիլոմետր,— բացականչեց հայ գրականության ուսուցչուհի Վարդուշ Թևոսյանը։

Իսկ ինքնաթիռը դեռ շարունակում էր իր թռիչքը։ Թեև, այժմ նա նկատելիորեն դանդաղ էր կատարում իր պտույտները։ Կարենը, որ նույնպես կանգ-





նել էր շրջազգեստի վրա և չթաքցրած ուրախությամբ նայում էր իր ձեռքի գործին, առաջ գնաց մի երկու քայլ և, լարված նայելով վերև, սկսեց վազել ինքնաթիռի ետևից, որպեսզի բռնելու պահին բռնի այն և թույլ չտա, որ խփվի գետնին, վնասվի։

Ինքնաթիռը մոտ վեց և կես կիլոմետր ճանապարհ անցնելուց հետո՝ պահպանելով վառելանյութի ամբողջ պաշարը, միանգամից վայր ընկավ և հայտնվեց Կարենի ձեռքերում։

Լսվեցին միահամուռ ծափահարություններ, իսկ Վարդուշ Թևոսյանը, որ շատ ոգևորված երիտասարդ կին էր, մոտ վազեց Կարենին, համբուրեց նրա ճակատը։

Դպրոցի շենքի դռների մեջ երևաց տեխնիկական աշխատողը։ Նա հանդիմանությամբ նայում էր բոլորին։ Զանգը նա վաղուց էր տվել, բայց ոչ ոք չէր լսել։

2

Յոթերորդ դասարանում ֆիզիկայի դաս է։ Բոլոր աշակերտները նստած են տխուր, մռայլ, և բոլորից ավելի տխուր ու մռայլ նստած է Կարեն Ավագյանը։ Կարծես քիչ առաջ չէր, որ նա հաջողությամբ բաց թողեց իր ինքնաթիռը, և քիչ առաջ չէր, որ նրա ընկերներն ուրախացել էին նրա հաջողության համար։

Տրամադրությունների այդպիսի հանկարծակի փոփոխության պատճառը դարձյալ նա էր՝ Միհրան Դանիելյանը։ Ախր, որտեղի՞ց էր նա այդքան չարալեզու։ Չէ՞ որ նա էլ պիոներ էր՝ բոլոր մյուսների նման, նրանց նման սովորում էր դպրոցում, ստանում էր լավ թվանշաններ, ծանոթներն ասում էին, որ նրա ծնողները շատ լավ մարդիկ են։ Իսկ ինքը... Ե՛վ պիոներական կոլեկտիվում, և՛ ընկերների կամ ուսուցիչների կողմից նա շարունակ ուշադրության առարկա էր, բոլոր նրան շրջապատողներն աշխատում էին դաստիարակել նրան, հանել նրա միջից այդ վատ գիծը։

Դասընկերները, Կարենին թևանցուկ արած, նրան շրջապատած, գալիս էին դեպի դասարան։ Բոլորը գովում էին ավիամոդելիստին, արտահայտում իրենց հիացմունքը։ Եվ ահա, միջանցքում, հանկարծ խոսեց Միհրան Դանիելյանը.

— Ի՞նչ եք այդքան գովում,— ասաց նա,— հայրը սարքել, տվել է նրան։ Ու՞մ հայտնի չէ, որ նրա հայրը ռեակտիվ ինքնաթիռի շոֆեր է։

— Ոչ թե շոֆեր, այլ օդաչու,— ուղղեց աղջիկներից մեկը՝ աշխատելով խոսակցությունը թեքել մի այլ կողմ։

Բայց Միհրանն այնպիսի բան էր ասել, որ խոսակցությունն այլ կողմ թեքել անկարելի էր։

— Իհարկե,— ասաց Կարենը՝ մի պահ կանգ առնելով,— հայրիկն ինձ շատ է օգնել։

— Ես էլ հենց դա եմ ասում,— չարախնդորեն ժպտաց Միհրանը։

— Ո՛չ, դու ուրիշ բան ես ասում,— բարկացավ Կարենը։— Ինքնաթիռը ես եմ կառուցել, ամբողջովին՝ ե՛ս։

— Դրան կարելի էր հավատալ, իհարկե,— իբր թե համաձայնեց Միհրանը,— եթե հայրդ ռեակտիվ ինքնաթիռի տրակտորիստ չլիներ։

— Ոչ թե տրակտորիստ, դմբո, այլ օդաչու,— նորից ուղղեց աղջիկը։

Մյուսները լուռ էին։ Միհրանը մի քանիսի սրտում ցանել էր կասկածի սերմը։ Իսկ մնացյալ մեծամասնությունը, թեև բոլորովին չէր կասկածում Կարենի ազնվության վրա, բայց ապացուցել դա չէր կարող...

— Դու գիտե՞ս ինչ ես դուրս տալիս,— չարախոսի վրա բարկացավ տղաներից մեկը։— Դու միաժամանակ վիրավորում ես թե՛ Կարենին, և թե՛ նրա հորը...

Չեմ վիրավորում, այլ բոլորիդ ներկայությամբ ասում եմ իմ կարծիքը, ինչ-կա որ,— արդարացավ Միհրանը և անցավ առաջ։ Բայց նույն պահին նրա ետևում լսվեց մի ուժեղ շրխկոց։ Նա զարմացած ետ նայեց։ Հատակի վրա ընկած էր փշրված ինքնաթիռը։ Կարենը, վիրավորանքից խիստ զայրացած, դիմեց նրան.

— Չե՞ս հավատում՝ պետք չէ։ Ես սա փշրեցի, իսկ շուտով կսարքեմ մի ուրիշը, որը կանցնի տասը կիլոմետր...

— Այո՛,— ասաց Միհրանը,— բոլորն էլ գիտեն, որ հայրդ ռեակտիվ ինքնաթիռի կոմբայնավար է...

Աղջիկն այլևս չխոսեց նրան։ Բոլորն այժմ տեսնում էին, որ իրենց չարաճճի ընկերը դիտմամբ էր ամեն անգամ մի տեսակ անվանում Կարենի հորը, թեև բոլորովին էլ չէր ուզում հեգնել, այլ հենց այնպես, իր չարաճճիության պատճառով։

— Ի՞նչ պատահեց,— շրխկոցը լսելով, վրա հասավ ուսուցիչը։

— Ոչինչ,— ժպտաց Կարենը,— ինքնաթիռը վար ընկավ ձեռքիցս, փշրվեց...

Մի քանի անգամ ընկերները կհանդիմանեին նրան՝ սուտ ասելու համար և կհայտնեին ուսուցչին իրականությունը, բայց այժմ չարեցին այդ՝ Կարենին նոր անախորժություն պատճառելու և Միհրանին հանդիմանությունից ազատելու համար։

Եվ ահա, այժմ նստած են բոլորը դասարանում, անխոս, մռայլ։ Մի չարաճճի տղա փչացրեց մյուսների տրամադրությունը և պղտորեց Կարենի ուրախությունը։ Հարկավոր է արմատախիլ անել նրա ցանած կասկածի սերմը, բայց ինչպե՞ս, ինչպե՞ս...

3

Նոր դասամիջոցի ժամանակ դասընկերները նորից շրջապատեցին Կարեն Ավագյանին, բայց այժմ նրանց վերաբերմունքի մեջ կար և՛ կարեկցություն, և՛ ցավակցություն, և՛ նրան մխիթարելու ցանկություն։ Այդ ամենը խիստ վիրավորում էր պատանի ավիակոնստրուկտորին և ցրում նրա ուրախության վերջին մնացորդները։

— Ինչո՞ւ ես ուշադրություն դարձնում դրա վրա,— ասաց Կարեն Ավագյանին դասընկերներից մեկը՝ Կարեն Բաղալյանը։— Նա ինձ վրա քի՞չ է չար լեզու թափեցել։ Անցյալ տարի, հիշո՞ւմ ես, իմ նկարած բնանկարը ցուցահանդեսում գրավեց երրորդ տեղը, իսկ նա դարձյալ չարախոսեց, թե հայրս է նկարել, թեև բոլորը գիտեն, որ հայրս դիմանկարիչ է և ոչ թե պեյզաժիստ...

— Դու էլ սխալ ես ասում,— հակաճառեց մեկը։ Մի՞թե պորտրետիստից չի կարող սովորել բնություն նկարողը։

— Ինչո՞ւ չէ։ Ես շատ եմ սովորել հայրիկից։

— Ո՞վ չի սովորում իր հորից,— վրդովվեցին շատերը։— Ինչո՞ւ կարելի է գրքերից սովորել, ուսուցիչներից սովորել, իսկ հորից՝ ոչ...

— Այո,— դանդաղ ասաց մի ուրիշ տղա,— բայց երբ հայր ու տղա մի ընտանիքում են ապրում և միևնույն գործով են զբաղվում...

— Ի՞նչ ես ուզում ասել,— ընդհատեցին նրան,— դու է՞լ ես համաձայն Դանիելյանի հետ...

— Ես ի՞նչ մեղավոր եմ, որ իմ հայրը ինքնաթիռ է վարում,— ասաց Կարեն Ավագյանը։

— Իսկ ես ի՞նչ մեղավոր եմ, որ իմ հայրը նկարիչ է,— կրկնեց Կարեն Բաղալյանը։

— Ջրամե՛ր...— հանկարծ բացականչեց Ավագյանը, և բոլորը տեսան, որ նրա դեմքի վրա չէր մնացել տխրության ոչ մի հետք։— Ես գտա այդ չարաճճիին լռեցնելու միջոցը...

Դառնալով դեպի Բաղալյանը, նա հարցրեց.

— Կարեն, ծնողներդ դեմ չե՞ն լինի, եթե ես մի երկու շաբաթ ապրեմ ձեր տանը... մինչև որ կառուցեմ իմ նոր մոդելը։

— Անդրեմ,— բացականչեց Բաղալյանը։— Մի՞թե դու չգիտես, թե մերոնք որքան են սիրում քեզ։ Ճիշտ է, դու միայն մի երկու անգամ ես եղել մեր տանը, բայց դու ես մեղավորը, որ շատ չես եղել։ Մերոնք միշտ հարցնում են քո մասին։ Իհարկե, կհամաձայնեն։ Ուզես՝ իմ մահճակալը կտամ քեզ, իսկ ինքս կքնեմ բազմոցի վրա, ուզես՝ կքնենք ոտ ու գլուխ։ Դու հո քնած ժամանակ շատ չե՞ս շուռումուռ գալիս։



Կարեն Ավագյանը, բոլորովին ուրախացած, նայեց շուրջը, ընկերներին: Նրա գտած սրամիտ ելքից ուրախացել էին բոլորը: Բայց այժմ տխրեց Կարեն Բաղալյանը:

— Լավ,— ասաց նա թախծոտ,— իսկ ե՞ս ինչպես դուրս գամ այդ չարալեզվի խոսքի տակից: Ես էլ եմ ուզում մի նոր բնանկար նկարել, բայց նա չէր պետք կասկած գցի իմ ամբողջ աշխատանքի վրա:

— Իսկ դու կգնաս մեր տուն ապրելու,— բացականչեց Կարեն Ավագյանը: Այնպիսի մի զվարթ ծիծաղ դուրս պրծավ բոլորի կրծքից, որ Միհրանը, որը հեռու կանգնած, խոսակցում էր ուրիշ դասարանցիների հետ, հետաքրքրված մոտեցավ: Երբ նրան հայտնեցին բանի էությունը, նա մի պահ նայեց ծուռումուռ և աշխատեց էլի ինչ-որ խաբեություն գտնել այդտեղ, բայց ոչ մի խաբեություն չկար:

— Լավ բան եք մտածել,— ստիպվեց խոստովանել նա:

— Ուրեմն, եթե երկու Կարեններն էլ իրենց խոսքը կատարեն, մեկը նոր ինքնաթիռ սարքի, իսկ մյուսը նոր բնանկար նկարի, դու ներողություն կխնդրե՞ս նրանցից:

— Ի...— կմկմաց Միհրանը, բայց նկատելով ընկերների զայրացած դեմքերը, շտապեց ավարտել բառը.— Իհարկե, իհարկե...

Այդ օրը, դասերն ավարտելուց հետո, Կարեն



Ավագյանը գնաց Բաղալյանենց տուն, իսկ Կարեն Բաղալյանը՝ Ավագյանենց:

4

Դպրոցի ընդարձակ դահլիճում խմբված, մեծ դասամիջոցին, կանգնել էին բոլոր դասարանների աշակերտները,— բոլորը առանց բացառության: Կանգնել էին նաև բոլոր ուսուցիչ-ուսուցչուհիները՝ նույնպես առանց բացառության: Չէր լսվում ոչ մի ձայն, չէր նկատվում ոչ մի շարժում: Բոլորը նայում էին դեպի դիմացի պատը:

## ՆԿԱՐՈՒՄ Ե



Շինարարություն
ԿԱՐԱՊԵՏՅԱՆ ՍՈՒՍԱՆՆԱ 6 տարեկան
(Լենինական)



ԱՌԱՔԵԼՅԱՆ
(Համշաղինի

# Իսկ ո՞վ գիտի...

ԳՈՀԱՐ ՖԻԼՈՅԱՆ

Գարուն է։ Ձյունը վաղուց հալվել, բարձրացել է հեռավոր սարերը։

Գարուն է, մարտ ամիսը, ձնծաղկի ամիսը։ Բայց այստեղ, մեր բակում, իհարկե, ձնծաղիկ չի բուսնում. ձնծաղիկը սարերումն է լինում։ Մեր բակում թթենու դեռ չբողբոջած մի ծառ կա, տակը՝ մի երկար նստարան, որ տաքացել է գարնանային արևից։

Ա՜յ, հենց այդ նստարանին նստած շաշկի էին խաղում Շուշիկն ու Կարենը։ Այնպես լա՜վ էր դրսում, և նրանք այնպե՜ս էին տարված խաղով, որ չնկատեցին, թե ինչպես իրենց շուրջը հավաքվեցին Լալան, Մարգոն, Աշոտիկը։ Հետո էլ՝ ուրիշ երեխաներ։ Նրանք ուրախ-զվարթ ծլվլում էին ծիտիկների նման։

— Նայե՛ք, երեխաներ, արդեն բողբոջները բացվել են, շուտով տերևներ կդառնան,— ասաց Աշոտիկը ցույց տալով թթենու ներքևի ճյուղերը։

— Ամենից առաջ կբացվեն ծիրանին ու դեղձենին,— ընդհատեց Գրիգորը։

— Իսկ ո՞վ գիտի, ինչո՞ւ թթենու տերևները ավելի ուշ են բացվում, քան դեղձենու տերևները,— հարցրեց ամենագետ Լևոնը։



Նկ. Վ. ԹԵՎԿԱՆՅԱՆԻ





— Իսկապես, ինչո՞ւ,— զարմանքով հարցրեց Շուշիկը,— շաշկին հրելով մի կողմ:— Չէ՞ որ պտուղները համարյա միասին են դուրս գալիս:

— Երևի նրանից է, որ թթենու տերևները ավելի ուշ են թափվում,— նկատեց Ռուբիկը:

— Ինձ էլ է այդպես թվում,— հաստատեց Լևոնը:

— Իսկ ո՞վ գիտի, թե ինչո՞ւ թիթեռները միայն ամռան վերջին են երևում,— հարցրեց Մարգոն:

— Իսկապես, ինչո՞ւ:

— Այդ նրանից է, որ պետք է սկըզբում՝ թրթուրից հարսնյակի փոխվեն, հարսնյակից էլ՝ թիթեռի,— բացատրեց Սաշիկը:

— Ճի՛շտ է, ճի՛շտ է,— հաստատեցին երեխաները:

— Իսկ ո՞վ գիտի...

Եվ հաջորդեցին այլ հարցեր, ում ինչ հետաքրքիր էր թվում: Այսպես հորինեցին մի հետաքրքիր խաղ՝ «Իսկ ո՞վ գիտի»:

Ճաշի տաք պահին, առաջին հարկի լուսամուտից գլուխը հանեց մորաքույր Թագուշը.

— Երեխանե՛ր, մի հարց էլ ես տամ: Իսկ ո՞վ գիտի, էն ո՞ր պիոներն է, որ երեսուն տարեկան է:

— Այդպիսի պիոներ չկա,— ձայն տվին երեխաները:

— Չէ՛, չէ՛, կա: Ուրեմն, չեք ճանաչում,— ժպտալով պնդեց մորաքույր Թագուշը, շարժելով երեխաների հետաքրքրությունը:

— Դա երևի ծույլի մեկն է, որ միշտ պիոներ է մնում,— ձայն տվեց Լևոնը:

Բայց հենց այդ պահին երեխաների ուշադրությունը գրավեց փոստատարը, որ բակ մըտավ իր լիք-լեցուն պայուսակով:



— Բարև՛, Հայկազ քեռի, բարև՛, Հայկազ քեռի...

— Մեզ ի՞նչ ես բերել:

— Իսկ մե՞զ...

— Իսկ մե՞զ,— վրա տվին երեխաները:

— Համբերե՛ք, համբերե՛ք,— ասաց Հայկազ քեռին ու ծանր պայուսակը դրեց նստարանին: Հետո նա դուրս քաշեց «Պիոներ» ամ-

սագրի նոր համարն ու ասաց.

— Ես քե՛զ, Լևոն Պետրոսյան։

— Ես քե՛զ, Մարգարիտ Սիմոնյան…

— Ես էլ քեզ…

Լևոնը դեռ նոր էր բացել ամսագի-րը, մեկ էլ ուրախ բացականչեց.

— Գտա՜, գտա՜, ա՛յ թե որ պիո-ներն է երեսուն տարեկան. մեր ամ-սագիրը։ Չէ՞ որ Թագուշ մորաքույրը տպարանում է աշխատում, դրա հա-մար էլ նա իմացել է…

Իսկ Թագուշ մորաքույրը ժպտալով նայեց երեխաներին։ Ուրախ էր, որ այդ հանելուկը ինքն իրեն լուծվեց։

## ՓՈՒՉԻԿՆԵՐԸ

*Մ. ԹԱՌՅԱՆ*

Կարմիր, կապույտ ու կանաչ
Փուչիկները վերցրած՝
Խաղում էին, աղմկում
Մանուկները մեր բակում։

Տղե՛րք, եկեք քուչիկին,
Կապենք երեք փուչիկին՝
Թողնենք լուսին բարձրանա,
Ա՛յ, գիտական փորձ է դա…

Տղաները հիացան,
Երբ այդ միտքը իմացան,
Ու շնիկին կապեցին,
Դեպի երկինք թողեցին։

Բայց, ա՛յ թե ինչ… Քուչիկը
Շարժեց մի մատ պոչիկը,
Փուչիկներով գույնզգույն,
Փախավ գնաց դեպի տուն…



Նկ. Հ. ԳԱԼԵՆՑԻ

# ԿԱՐԿԱՆԴԱԿՆԵՐԸ

ԱԼԵՔՍԱՆԴՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ

Նկ. Ռ. ՄՈՒԹԱՖՅԱՆԻ



Մայրի՛կ, այս կարկանդակները բոլորը պիտի ուտե՞նք,— հարցրեց Աշոտիկը նախաճաշից առաջ։

— Ով ինչքան ուզենա՝ այնքան էլ կուտի։

— Հա՞, դե ուրեմն ես բոլորը կուտեմ,— ասաց Աշոտիկը և ափսեն իր առաջը քաշեց։

Պարզ է, բոլորը չկերավ, սակայն լավ կշտացավ։ Հազիվ էր նա շուրթերը լիզելով ափսեն մի կողմ հրել, երբ սեղանին հայտնվեց անուշաբույր տորթը։ Աշոտիկի աչքերը մի պահ լայնացան։ Քիչ մնաց, որ լաց լիներ։ Ախր նա տորթ ավելի շատ էր սիրում...

Հայրիկը և մայրիկը խորամանկ ժպտում էին...

# ՊԱՏԺԻ ԴԵՂԸ

— Այս ո՞վ է գիրքը պատռել, Սաթի՛կ,— հարցրեց մայրիկը։

— Ը... Վարդանիկը, մայրիկ։

— Դու ճի՞շտ ես ասում։

— Այո,— կարմրելով կմկմաց Սաթիկը։

Լավ, կարթնանա, ես նրան կպատժեմ... Ճաշի մեջ ձեռքերը ցավեցնող դեղ կլցնեմ, որ հասկանա, թե ինչպես պետք է վարվել գրքերի հետ,— ասաց մայրիկը, ստուգող հայացքով նայեց աղջկան և գնաց խոհանոց։

Սաթիկի սիրտը ճմլվեց։ Նա խղճաց Վարդանիկին, սակայն անխոս, հազիվ զսպելով արցունքները, անցավ մյուս սենյակը, ուր քնած էր նա։ Սաթիկը գիտեր, որ Վարդանիկն արդարանալ չէր կարող, նա միայն կարողանում է «մայրիկ» ասել, բայց իր պատճառով պետք է պատժվեր։ Խե՜ղճ Վարդանիկ...

Քիչ հետո երեխան շուռ ու մուռ եկավ օրորոցի մեջ և, աչքերը բացելով, կանչեց մայրիկին։

Ներս մտավ մայրիկը և սկսեց հագցնել երեխային։

— Սաթի՛կ, գնա ճաշ բեր,— վերջացնելուց հետո ասաց մայրիկը։

Սաթիկը դուրս գնաց և ուշացավ։

— Սաթի՛կ,— քիչ հետո կանչեց մայրիկը։

Պատասխան չեղավ։

Մայրիկը երեխային դրեց մահճակալին և ինքը գնաց խոհանոց։ Բայց ի՜նչ տեսավ։ Սաթիկը նստել էր անկյունում ու վախով նայում էր ձեռքերին, իսկ Վարդանիկի ամանը լրիվ դատարկ էր։

# Իմ գառնուկը

Գ. ԵՂԻԿՅԱՆ

Գառնուկ ունեմ շատ սիրունիկ,
Մորթին գանգուր, մանրատոտիկ։

Առաջն ընկնեմ գդի անեմ,
Տանեմ մոտիկ սարը հանեմ,
Անուշ-անուշ արոտ անի,
Շվիս ածեմ՝ քունը տանի։

Իսկ իրիկվա խաղաղ ժամին,
Երբ շնկշնկա մարմանդ քամին,
Նորից կանչեմ, գդի անեմ,
Իր կարոտած մորը տանեմ։



## ԱՆՄԻՏ ԱՅԾԻԿԻ ԱՐԿԱԾՆԵՐԸ



Անթիվ այծեր կան մեր
Լեռնաստանում,
Տե՛ս, հավաքվել ու ժողով
են անում։



Որտեղից-որտեղ լուր է
տարածվել
«Պացանովայում
պայտում են այծեր»...



Ու որոշում են.— պետք է
հենց այսօր
Այնտեղ ուղարկել մի
պատգամավոր.—

# Գաղտնիքը

ՊԱՐՈՒՅՐ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ



Նվեր առան
Հայրն ու տղան
Եվ թաքցրին, որ տան մորը
Մարտի ութին՝ կանանց օրը։

Բայց գաղտնիքը ծանր բան է։
Հանգիստ չունի տղան տանը.
Վախենում է՝ մայրն իմանա։
Դրա համար ասում է նա.

Դու կարծում ես, թե քեզ համար
Մենք նոր զգե՞ստ առանք հիմա...
Ո՛չ, հայրիկը միտք էլ չունի...
Կամ կարծում ես կապույտ գույնի՞...

Մայրն է ժպտում, գրկում որդուն.
Ի՞նչ գաղտնապահ բալիկ ես դու։



— Տեսնենք՝ պայտերո՞վ
կգա այնտեղից,
Եվ չի՞ զանգատվի
արդյոք պայտերից։



— Դե՛, ո՞վ կգնա, ո՞վ մեզ
ճար կանի...
— Ե՛ս.—գոչեց Անմիտ-Այծիկն
անվանի։



Եվ հացով տոպրակն իր
ուսին առավ,
Հրաժեշտ տվեց ու
ճամփա ընկավ։

## ՋԵՐՄԱՆՈՑԻ ՔԱՂԱՔԸ

Այսպիսի քաղաք դուք դեռ չեք տեսել։ Նա հյուսիսում է գտնվում, բայց չկարծեք, թե այնտեղ ցուրտ է, և բոլորը մուշտակով են ման գալիս։ Փողոցներում, նույնիսկ ձմռանը, աճում են արմավենիներ ու ծաղիկներ։ Եվ դա նրանից է, որ քաղաքի վրա դրված հսկայական թափանցիկ կափարիչը չի թողնում քաղաքը ցրտի։

## ԽԵԼՈՔ ԱՎՏՈՄԵՔԵՆԱՆԵՐԸ

Փողոցում շատ մեքենաներ կան։ Նստում ենք նրանցից մեկը։ Բայց այս ի՞նչ է, վարորդ չկա։ Մեզ ո՞վ կտանի...

Եվ հանկարծ լսում ենք.

— Ո՞ւր եք ուզում գնալ։

— Մենք ուզում ենք շրջել ամբողջ քաղաքը,— պատասխանում ենք ու մտածում. «Իսկ այդ ո՞վ էր հարցնողը»։

Ավտոմատ վարորդը թաքնված էր փոքրիկ արկղում։ Հենց նա էլ քշում է մեքենան։

## ՓՐՓՈՒՐԵ ՏՆԵՐԸ

Այս ի՞նչ տարօրինակ տներ են։ Բայց զարմանալու ոչինչ չկա, դրանք փրփուրից են։ Դա հատուկ տեսակի փրփուր է, որ նման է քարե սպունգի, դրա համար էլ տները թեթև են, եթերային...

Այ, տե՛ս, այնտեղ երկու բանվոր բարձրացրին մի ամբողջ հարկ և բնավ էլ չհոգնեցին։ Իսկ այստեղ մի մարդ մենակ է բարձրացնում պատը։

Նրանք երեխաների համար դպրոցի նոր շենք են կառուցում։

## ՕԴԱՅԻՆ ՀԵԾԱՆԻՎՆԵՐԸ

Փողոցում շարքով սլանում են մեքենաները։ Բայց քիչ չեն նաև օդային ճանապարհորդները։

Ա՛յ, փողոցի վրա օդում կանգնած է ուղղաթիռը։ Նրա միջից կախ է ընկել թոկե սանդուղքը։

— Միշա՛,— կանչում է հայրիկը։— Շուտ արա, նստիր, դպրոցից կուշանաս։



## ՎԱՃԱՌՈՂ ՄԵՔԵՆԱՆ

Այդ ի՞նչ է գրքի կրպակի մոտ, այդ ի՞նչ գրքի կույտեր են։

Թյուրիմացություն։ Դպրոցականը սեղմել է ոչ այն սեղմակը, որը պետք էր, և ահա վաճառող մեքենան ներսում եղած բոլոր գրքերն է դուրս թափել։ Չպետք է ցրված լինել։

## ԱՆՍՈՎՈՐ ՀԵՌՈՒՍՏԱՑՈՒՅՑԸ

Ինչո՞ւ են այգում նստած երեխաներն անընդհատ վերև նայում, ի՞նչ կա այնտեղ։

Նայում ենք մենք էլ։ Պա՜հ, սա մեր «Պիոներն» է։ Այդ ինչպե՞ս է նա երկինք հասել։

Պարզվում է, որ մարդիկ արհեստական ամպ են հնարել։ Նրանց երկնքում պահում է մի հատուկ ինքնաթիռ։ Ամպի վրա, ինչպես կինոյի էկրանին, մի հատուկ ապարատ կա, որ ցույց է տալիս մանկական հեռուստածրագիրը, որտեղ «Պիոներ» ամսագիրն էլ կա։ Ինչ հետաքրքիր է...

## ՆՈՐ ԿԻՆՈԹԱՏՐՈՆՈՒՄ

Այստեղ ամեն ինչ անսովոր է։ Գոգավոր պատին կա մի էկրան։ Նրա առաջ փափուկ աթոռներին նստած են մարդիկ։ Մենք էլ ենք նստում։

...Նավը լողում է Սառուցյալ օվկիանոսում, իսկ սա ինքնաթիռ է։ Սա թռչում է անապատի վրայով։

Բայց ի՞նչ կա որ։ Ահա թե ինչ։ Մեզ համար մերթ ցուրտ է, մերթ տաք։ Դրանք կինոնկարի հետ կապված արհեստական կլիմաների մեքենաներն են, որոնք դահլիճում փոխում են եղանակը, որ դիտողներն զգան, թե որտեղ է կատարվում գործողությունը։

Այդպիսի կինոներ գնալուց առաջ պետք է մտածել, թե ինչպես հագնվել։

Ահա վերջացավ մեր աշխույժ ճանապարհորդությունը ապագայում։ Այդ գալիքը այնքան էլ հեռու չէ։ Դուք շուտով կտեսնեք այն, որն, իհարկե, ձեզ շատ դուր կգա։ Դե, ավարտենք մեր ճանապարհորդությունը։






(Հնդկական հեքիաթ)

Կոլիբրին այնքան փոքրիկ թռչուն է, որ հազիվ թիթեռնիկի չափ լինի։ Բայց նա կարող է շատ արագ թռչել, այնպես, ինչպես թռչում է հրացանից արձակած գնդակը։

Մի անգամ նրա գլուխը մտավ, թե կարող է մրցել Փայտփորիկի հետ։ Իսկ Փայտփորիկը շատ ծանրաշարժ է, բայց օրերով կարող է թռչել։

— Լսիր, փեսա,— ասաց մի օր նրան Կոլիբրին,— եկ մրցենք, տեսնենք ո՞վ շատ կթռչի։

— Ինչո՞ւ չէ,— պատասխանեց Փայտփորիկը,— բայց դու ուժ ունե՞ս թռչելու։

— Շա՜տ...— գլուխը գովեց Կոլիբրին։

— Այդ՝ դեռ կտեսնենք։ Իսկ մրցումը ե՞րբ կարող ենք սկսել։

— Վաղն առավոտյան։

— Լավ, ես քեզ կսպասեմ։

Հաջորդ առավոտյան, երբ նրանք հանդիպեցին, Փայտփորիկը հարցրեց.

— Հը, ի՞նչ նորություն։

— Առանձնապես ոչինչ։

— Այդ դեպքում սկսենք,— ասաց Փայտփորիկը և ավելաց-



Նա ճամփին իրեն շատ
լավ էր զգում,
Թռչկոտում էր և
ուրախ մկկում...



Երկու շլդիկի հանկարծ
հանդիպեց,
Պացանովոյի ճամփան
հարցրեց



Ասացին.— Գնա ու հասիր
ծովին,
Հետո էլ լողա դեպի
եղևնին...

րեց.— Ուզում ես առաջինը դու թռչիր, իսկ ես կգամ քո հետևից։

Այդ լսելով Կոլիբրին անմիջապես պոկվեց տեղից և իսկույն չքացավ։ Ապա օդ բարձրացավ Փայտփորիկը։ Կոլիբրին դեռ գետին չհասած՝ ուժասպառ ընկավ ցած։ Շուտով Փայտփորիկը հասավ նրան։



— Ի՞նչ է եղել, —հարցրեց նա ժպտալով։

— Ոչինչ, մի քիչ հոգնել եմ,— պատասխանեց Կոլիբրին։

— Տեսա՞ր,—ծիծաղեց Փայտփորիկը։

— Լսիր, փեսա, թող քո ղեկից բռնեմ, — խնդրեց Կոլիբրին։

Փայտփորիկը բարեսրտորեն համաձայնեց և նրան թողեց նստելու իր ոտքերի վրա, որոնք թռչելու ժամանակ ղեկի տեղ էին ծառայում։

Կոլիբրին ամբողջովին թրջված, բարձրացավ Փայտփորիկի ոտքերին և լավ տեղավորվելուց հետո, բացականչեց.

— Դե՛հ, թռչենք առաջ։

Այսպես, Կոլիբրին ու Փայտփորիկը թռան միասին և երեկոյան հաշտ ու խաղաղ հասան գետի մյուս ափը։

Հաղթողն ո՞վ եղավ։

Գերմաներենից փոխադրեց՝
Հ. ԳՅՈՒՓԵԼՅԱՆ



Բայց վրա պրծավ
կատաղած մի շուն,
Այծիկը ծառը բարձրացավ
իսկույն։



Այստեղ ծեր կաղնին
գոչեց բարկացած.
— Շո՛ւտ, իջի՛ր, թե չէ
կնետեմ քեզ ցած։



Քամին ծեր կաղնուն
օգնության հասավ,
Ջոր տերևի պես
Այծիկին տարավ։

## ՄՈՒԿՆ ՈՒ ԱՐՋԸ

(Ըստ Ե. Դրուժկովայի)

Աշխատասեր մի մկնիկ
Տուն էր շինել սիրունիկ.
Մեկ էլ եկավ մի մեծ արջ,
Կանգնեց նրա տան առաջ.
Մուկը նրան երբ տեսավ,
Բարև տվեց ու ասավ.
— Մի՛ ներս արի, մեծ եղբայր,
Տուն եմ շինել շատ հարմար.
Տո՛ւն եմ ասում, որ ներս գաս,
Դու հիացած կմնաս։—
Արջը հենց որ ներս մտավ,
Տունը իսկույն փուլ եկավ։
— Վա՜հ, այսպես էլ հանեղո՞ւկ.
Ո՞ւր է տունդ, ա՛յ գիժ մուկ...

Ֆ. ՏՈՌՈՅԱՆ





## Ո՞վ է մեծը

ՏԱՆ ԿԵ-ՍԻՆ
(Չին գրող)

Մայրը չորս որդի ուներ։

Նրանցից Թուն-Թունը ուներ երեք մեծ եղբայր։

Ժուն-Ժունը՝ երեք փոքր եղբայր։

Մին-Մինը՝ մեկ մեծ և երկու կրտսեր եղբայր։

Իսկ Պին-Պինը՝ երկու ավագ և մեկ կրտսեր եղբայր։

Ինչպե՞ս էր ամենամեծ եղբոր անունը, ինչպես էին երկրորդ, երրորդ և ամենակրտսեր եղբայրների անունները։



Թեև շուն չկար էլ
ծառի տակին,
Բայց ընկավ ոզնու
փշոտ կռնակին։



Այծիկը ճղղաց.—Վա՜յ,
մեռա, վայ մե՜...
Տնաքանդ ոզնի, էլ ինչպե՞ս
քայլեմ...



— Իզուր ես գոռում,—
կմկմաց ոզնին.—
Քո ցավին միայն
բժիշկը կօգնի։

# Ցիցը

Սյաո Դուն-մինը շտապում էր դպրոց։ Վազելով կես ճանապարհն արդեն անցել էր, երբ հանկարծ ոտքը մի ինչ-որ ցցի կպավ և, թը՜մփ, վայր ընկավ։



Նա արագ ոտքի կանգնեց և, վրայի փոշին անգամ թափ չտված, շարունակեց վազել։ Բայց մի քիչ վազելուց հետո, Սյաո Դուն-մինը ետ դարձավ։ «Չէ՞ որ ուրիշ մարդիկ էլ կարող են ընկնել»— մտածեց նա, գետնից հանեց ցիցը և մի կողմ նետեց։

Թարգմ. Հ. ՄՈՒՐԱԴՅԱՆ



Նկ. Ս. ԱԶԻԶՅԱՆԻ



# ՍԱԳՆ ու ագռավը

ԱՐՇԱՎԻՐ ԴԱՐԲՆԻ

Ագռավն ասաց
Ճերմակ սագին.
— Ղա՛, ղա՜, ինչո՞ւ
Մաքուր շոր կա
Միշտ քո հագին...
Սագը ասաց.
— Ես սիրում եմ
Միշտ լողանալ.
Ոչ թե քեզ պես
Ջուր գողանալ...



Արջից լավ բժիշկ
չկար ոչ մի տեղ.
Քննեց Այծիկին
ու գրեց մի դեղ։



— Ես դեղ չեմ խմի. —
Այծիկը ճչում
Եվ լուսամուտից,
շուտ դուրս է թռչում։



Երկու ձորթ էին
արածում քաղցած.
Այծիկի տեսքից՝
փախան վախեցած։

(Շարունակելի)

# ԱՅՍՕՐՎԱ ԳՈՐԾԸ ՎԱՂՎԱՆ ՄԻ ԹՈՂՆԻ



(Անգլիական հեքիաթ)

Մի վաճառական լավ առևտուր էր արել տոնավաճառում. Ծախել էր իր ամբողջ ապրանքը և մաղախը լցրել ոսկով ու արծաթով: Որպեսզի շուտ տուն հասներ, նա մաղախը կապեց ձիու մեջքին ու անմիջապես ճամփա ընկավ:

Կեսօրին հանգստացավ մի գյուղաքաղաքում: Երբ ուզեց ճամփան շարունակել, պանդոկի ախոռապանը ձին ախոռից դուրս բերեց ու ասաց.

— Ձիուդ հետևի ձախ ոտքի պայտից մի մեխ է պակասում, պարոն:

— Թող պակասի, — պատասխանեց վաճառականը, — ինձ մնում է վեց մղոն ճանապարհ, ի՞նչ պիտի լինի, շուտով տեղ կհասնեմ:

Կեսօրից հետո, երբ նա իջևանեց մի այլ պանդոկում, որ ձին կերակրի, ախոռապանը գնաց նրա սենյակն ու ասաց.

— Պարո՛ն, ձեր ձիու հետևի ձախ ոտքի պայտը չկա: Տանե՞մ նրան դարբնի մոտ:

— Կարիք չկա, — ասաց վաճառականը, — ձին կդիմանա. երկու մղոն է մնացել, մինչև տուն հասնելը: Ես շտապում եմ:

Նա ձին քշեց ու գնաց, բայց շատ չանցած՝ կենդանին սկսեց կաղալ, հետո սայթաքել: Սայթաքելով մի քիչ գնալուց հետո, ձին ընկավ, ոտքը ջարդեց: Վաճառականն ստիպված նրան թողեց, մաղախը իջեցրեց, դրեց իր ուսին ու սկսեց քայլել: Եվ ուշ գիշերին նա հազիվ տուն հասավ:

— Ա՜խ, այդ անպիտան մեխն էր մեղավոր, — ասաց նա ինքն իրեն:

Թարգմ. Ա. Բազարյան



Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆ

# ՀԱՍԿՆ ՈՒ ՊՂՊՋԱԿԸ

ՎԱՐԴԱՆ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

Սարնաջրից մի պղպջակ
Վեր բարձրացավ,
Հենց այդ պահին գարու հասկը
Նրան ասավ.

— Ուռած-տռզած ու՞ր ես թռչում,
Էդ ո՞ւր այդպես,
Խորհուրդ ունեմ, մի պահ լսիր,
Ա՛յ լուսերես։

Է՜, ի՞նչ խոսեմ քեզ պեսի հետ,
Գարի անգետ,
Ես թռչում եմ, որ փայլփլեմ
Աստղերի հետ։

Այսպես, չուզեց հետը խոսել,
Թեքեց ուղին,
Հենց այդ պահին կպավ ցցված
Ծառի ճյուղին,

Կպավ ճյուղին ու տրաքվեց,
Ցնդեց գնաց,
Եվ պարծենկոտ պղպջակից
Ձեն չմնաց։

Նկ. Հ. ԳԱԼԵՆՑԻ

# Քաջ բզեզը

Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Ես բզեզ եմ, ես բզեզ,
Տեսեք՛, ինչքա՜ն քաջ եմ ես,
Կացինն առած գնում եմ,
Որ ծառն անեմ երկու կես...



Այնտեղ, պատի մոտ, երկու պատանիներ, աթոռների վրա բարձրացած, մեխեր էին խփում պատին, երրորդը կանգնել էր՝ լրագրերով փաթաթված մի մեծ, տափակ առարկա ձեռքին,—ըստ երևույթին՝ նկար, իսկ չորրորդը կարգադրություններ էր անում։

Երբ երեք մեխն էլ, այդ չորրորդ պիոների պահանջի համաձայն, խփված էին արդեն իրենց տեղերում, նա, որ յոթերորդ դասարանի աշակերտ Կարեն Բաղալյանն էր, վերցրեց նկարն ընկերոջ ձեռքից, բաց արեց և մյուս երեքի օգնությամբ կախեց պատից։

Բոլորը նայեցին գոհունակությամբ, լսվեցին գովասանական շշուկներ։

Բայց ահա լսվեց յոթերորդ դասարանցի Միհրան Դանիելյանի ձայնը.

— Եվ գիտե՞ք, ընկերներ, նա այս անգամ նկարել է առանց իր նկարիչ հորից որևէ խորհուրդ հարցնելու։ Ի՞նչպես կարելի է։ Մի՞թե փոքրերը չպետք է սովորեն մեծերից...

— Կարեն, ճի՞շտ է ասում Դանիելյանը,—զարմացավ հայ գրականության դասատու ընկեր Թևոնցը։

— Այո,—փնչաց Կարենը՝ զայրացած նայելով դեպի իր դասընկերը։

— Իսկապես որ, ի՞նչպես կարելի է, իրավացի է Դանիելյանը։ Ունենալ այդպիսի տաղանդավոր հայր և չսովորել նրանից։ Դրա համար էլ այս նկարի մեջ կան մի քանի թերություններ, որոնք նախորդի մեջ չկային։ Իսկ ընդհանրապես՝ լավ նկար է։

— Երեխաներ, — ասաց ուսուցիչներից մեկը, — դուք այս նկարը դեռ շատ անգամ կդիտեք։ Իսկ հիմա, քանի դեռ ժամանակ կա, գնանք բակ։ Կարեն Ավագյանը բաց է թողնելու իր նոր ռեակտիվ ինքնաթիռը։

— Այդ Կարենը նույնպես զոռոզացել է, հոր հետ չի խորհրդակցում, ինքնուրույն է անում ամեն ինչ,—նորից ասաց Միհրան Դանիելյանը բարձրաձայն։— Իհարկե, ես էլ համոզված եմ, որ նրա նոր ինքնաթիռը կանցնի տասը կիլոմետր, բայց եթե գոնե մի քիչ օգտվեր հոր օգնությունից, մի՞թե չէր կարող տևողությունը հասցնել քսան, երեսուն կիլոմետրի...

Կարեն Ավագյանն անչափ զարմացած, նայեց դասընկերոջը։

— Ճիշտ չե՞մ ասում, — հարցրեց Միհրանը դպրոցի դիրեկտորին։

— Ճիշտ ես ասում, —համաձայնեց դիրեկտորը, — բայց դու այսօր մի քիչ շատ ես խոսում։

— Դա լավ չէ, իհարկե, —հանձն առավ Միհրանը, — բայց թույլ տվեք մի բառ էլ ասեմ, միայն մի բառ՝ Կարեն Ավագյանին և Կարեն Բաղալյանին։ Նրանք գիտեն, թե ինչու համար եմ ասում այդ բառը։ Ամբողջ յոթերորդ դասարանը գիտե...

Դառնալով դեպի երկու Կարենները, Միհրան Դանիելյանն ասաց հստակ, լսելի ձայնով.

— Ներողություն...

ՄԱՆՈՒԿՆԵՐԸ



... 10 տարեկան



Գարուն

ԽԱՉԱՏՐՅԱՆ ՍՈՒՐԻԿ 6 տարեկան

(Երևան. Ն. Կ. Կրուպսկայայի անվան մանկապարտեզ)



# ԱՇԽԱՏԱՍԵՐ ՏՂԱՆ

ՎՌԱՄ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Արամն առավ մուրճ ու դանակ.
Որ պատրաստի մի նոր սայլակ:
Փայտ է բերել, կտրել վաղուց,
Մեխեր առել հյուսն քեռուց.
— Չըրը՛խկ, թըրը՛խկ.—անվերջ զարկում,
Մեկ քանդում է ու մեկ սարքում:
— Հերիք, Արամ. դասըդ թողած,
Այդ ինչո՞վ ես դու զբաղված:
Մայրիկն ասաց, որ քեզ համար
Շուտով սայլակ կառնի հարմար.—
Ասաց քույրը քիչ բարկացած.
Բայց Արամը նրան ասաց.
— Չէ՛, ուրիշի սարքածն ի՞նչ է.
Մի՞թե ձեռքիս ուժը քիչ է.
Մի՞թե վատ է ուրագն իմ սուր.
Որ ես պարապ նստեմ իզուր...
Չէ՛, ես վարպետ պիտի լինեմ
Եվ սայլակը ինքս շինեմ:

Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# ԴԺՎԱՐԻՆ ԱՆՑՈՒՄ

*ՄԻԽԱՅԻԼ ՌՈՒԲԱՇՈՎ*

*Նկ. Ն. ՎԱՍԻԼՉԵՆԿՈՅԻ*

Գանյան պատրաստվում է գրուանքի գնալ։

— Աղջիկս, խաղա նրբանցքում,— ասում է մայրը,— չարություն չանես և Եվսեյկայի խաթրին էլ չդիպչես, թե չէ մի օր նա քեզ, ինչպես հարկն է, ցույց կտա։

— Ո՞վ, Եվսեյկա՞ն ինձ ցույց կտա, ես էլ նրանից վախեցա էլի։ Նույնիսկ Մազափունջն է ինձանից փախչում։

Գանյան իրենց հարևան Վիտյա Ատամանչուկին Մազափունջ էր ասում դեռ անցյալ աշնանից։ Այն ժամանակ նրանք երրորդ դասարանում էին սովորում։ Երբ երեխաները դպրոց եկան, ուսուցչուհին շնորհավորեց նրանց նոր ուսումնական տարվա առթիվ.

— Դուք ձեզ հետ, երեխանե՛ր, կարծես թե մի քիչ արև եք բերել դասարան։ Ամառվա ընթացքում ոսկեզօծվել են և՛ Եվսեյկայի, և՛ Վիտյայի, և՛ քո մազերը, Տիմկո...

Իսկ աղջիկներին կարծես թե չնկատեց։ Մինչև անգամ Գանյայի մասին ոչինչ չասաց։ Իսկ Գանյան մտածեց իր շեկ, փափուկ, արևից գունաթափված հյուսերի մասին և իսկույն գլխի ընկավ, որ այս խոսակցությունից հետո Եվդոկիա Իվանովնան կըպահանջի տղաներից խուզել մազերը։

Այդպես էլ եղավ։

Միայն Վիտյան էր, որ մազերը չխուզեց։ Հաջորդ օրը նա դպրոց եկավ թեթևակի ուղղված մազերով և ճակատին թափված մազափնջով։ Մինչև դասերը սկսվելը Ատամանչուկը հպարտորեն քայլում էր միջանցքում, հաճախակի կռանում էր՝ իբր թե կոշիկի թելերը կապելու, գլուխը թափ տալով մոտենում էր աղջիկներին և այս բոլորը նա անում էր, որպեսզի բոլորը տեսնեին, թե ոսկեգույն մազափունջը ինչքան գեղեցիկ է թափվում նրա լայն արևավառ ճակատին։

Հնչեց զանգը։ Ուսուցչուհին մտավ դասարան, և Գանյան իսկույն զեկուցեց.

— Եվդոկիա Իվանովնա, Մազափունջը չի խուզել մազերը։

— Ի՞նչ Մազափունջ,— զարմացավ ուսուցչուհին։— Մեր դասարանում ոչ մի Մազափունջ էլ չկա։— Հետո տեսավ Վիտյային և ամեն ինչ հասկացավ։

— Լավ չէ, Գանյա, ընկերներին մականուններ տալը, վիրավորական է։

Բայց այդ օրվանից, թեև Վիտյան լրիվ խուզեց մազերը, նրան կանչում էին Մազափունջ։ Իհարկե, ոչ թե Եվդոկիա Իվանովնայի ներկայությամբ և դասերի ժամանակ, այլ ընդմիջումներին և փողոցում։



Ու հենց հիմա էլ Գանյան դեռ տնից դուրս չէր վազել, որ բացականչեց.

— Մա-զա-փու՜նջ։

— Ի՞նչ ես ուզում,— Վիտյայի փոխարեն կամացուկ ձայն տվեց Եվսեյկան դուրս նայելով անկյունից։— Թաքնվի՛ր, մենք պահմտոցի ենք խաղում։

— Ֆի՜, դուք էլ զվարճություն եք գտել,— փընթփընթաց Գանյան և իսկույն մատնեց, թե ով որտեղ է թաքնվել։

— Դու մի՛շտ խանգարում ես,— բարկացավ Վիտյան։— Իսկ ինքդ ոչ մի հետաքրքիր խաղ չես հնարում։ Պարծենկոտ ես դու,— ավելացրեց նա։

— Իսկ ես կհնարեմ,— Գանյան հոլի նման պտտվեց երեխաների առաջքում, հետո նրանց շարք կանգնեցրեց և հայտարարեց, որ «հետախույզներ» են խաղալու։ Եվ իսկույն էլ ինքն իրեն նշանակեց հրամանատար։

Իսկ ու՞մ ընտրել օգնական։ Եվսեյկան չի համապատասխանում, շատ է նիհար։ Նադիկան դանդաղաշարժ է, որովհետև շատ գեր է։ Սվետ-



լանան դեռևս դպրոց չի գնում և արդեն ակնոցներ է կրում։

— Ի՜նչ խորամանկ է,— ասաց Վիտյան,— ինքն իրեն հրամանատար է նշանակում։

— Այո,— ավելացրեց եվսեյկան,— գուցե մենք մեկ ուրիշին ենք ցանկանում։

— Վիտյայի՜ն,— ակնոցների ապակիները փայլեցնելով կանչեց Սվետլանան։

Բոլորը համաձայնվում են նրա հետ։ Ատամանչուկը իսկապես հրամանատար է։

Գանյան նեղացած շուրթերն է ուռեցնում։

— Ֆի՛, ես մենակ կխաղամ։

Նա մի ջարդված քարի կտոր գտավ և սկսեց թռչկոտել գետնին նկարված քառակուսիների վրա։ Վիտյան շշուկով խորհրդակցեց իր «հետախույզների» հետ և գնաց դեպի նրբանցքի ծայրը։ Այստեղ նրանց ճանապարհը կտրեց նեղ ու ծանծաղ գետակը, որ ծուլորեն հոսում է, լվանալով քարերով շարված և վայրի խոտերով ծածկված ափը։ Ափի վրա ձգվում է փայտյա մի ցանկապատ։ Թե երբ են ծեր Պոլինա տատի տունը ցանկապատել, երեխաները չգիտեն։ Ամենայն հավանականությամբ վաղուց, որովհետև տախտակները սևացել են, ծռմռվել, իսկ ցածում, որտեղ ջուրն է հոսում, ծածկվել են բորբոսով։ Որոշ մասերում երևում են կարմրաշեկ անցքեր՝ դրանք ժանգից քայքայված մեխերի տեղերն են։

Գանյան մենակ տխրում է։ Նա դադարում է թռչկոտելուց և սանդալի քթով այնպես է հարվածում քարի կտորին, որ նա գլորվում է նրբանցքով մեկ, Հարվածից ցավում է ոտքի բութ մատը։ Գանյան կննոոտվում է և շտապում է դեպի երեխաները։ Այնտեղ՝ ավելի հետաքրքիր է։

Հրեն Մազափունջը Նադիկյայի ու Սվետլանայի հետ թաքնվել է խոտերի մեջ։ Հետևում են, թե ինչպես է եվսեյկան զգուշորեն անցնում ցանկապատի տակով: Նա առաջինն է գնում «հետախուզության»։ Փոքրիկ սարդի նման նա կառչում է տախտակներից, զգուշորեն անցնում մի քարից մյուսը։ «Ա՜յ քեզ վախկոտ, ամբողջովին դողում է»— մտածում է Գանյան նրա մասին և ցանկանում, որ եվսեյկան իսկապես վախենա ու ետ վերադառնա։ Ինչպե՜ս այն ժամանակ նրա վրա կծիծաղի Գանյան։ Իսկ ի՞նչ է հնարում այս Մազափունջը։ Հետաքրքիր է, Մազափունջը ինքը կկարողանա՞ անցնել այդ ցանկապատի տակով։ Թող հիմա էլ իրեն՝ Գանյային խնդրեն։ Գանյան մի վայրկյանում կանցներ այդ դժվարին անցումը։

Բայց ոչ ոք չի էլ մտածում նրան խնդրել։ Վիտյան աչքը չի հեռացնում եվսեյկայից, եվ հանկարծ դուրս է թռչում թփերից ու վազում է դեպի ցանկապատը։ Նա վախենում է, որ իր հետախույզը կպոկվի ու կընկնի ջուրը։

Գանյան կարծես հենց դրան էր սպասում։ Թող ջուրն ընկնի, այն ժամանակ կիմանա, թե ինչ է նշանակում ենթարկվել Մազափնջին։

Իսկ փոքրիկ «հետախույզը» կարծես կռահելով Գանյայի միտքը, ճարպկորեն անցնում է փտած, խարխլված տախտակների մոտով։ Էլի մեկ-երկու քայլ և եվսեյկան անհետանում է հին, ծռված ցանկապատի հետևում։

Հիմա Նադյայի հերթն է, հետո կճանապարհվի Սվետլանան, Վիտյան կգնա վերջինը։

— Է՜, այդ հաստլիկը մի՞թե կարող է,— Գանյան արհամարհանքով ու խեթ խեթ նայում է Նադիկյային։— Հիմա ես կգնամ:

Վիտյան չի առարկում, իսկ Նադիկյան շատ էլ չի ձգտում, նա մի քիչ վախենում է եվսեյկայի ետևից գնալ։

Գանյան խիզախորեն վազում է դեպի ցանկապատը, թռչկոտում է մի քարից մյուսը։ Ո՞ւր է, որ եվսեյկան հասնի իրեն։ Բայց ահա տախտակը, որից կառչում է Գանյան՝ պոկվում է։ Գանյան հասցնում է կառչել մյուսից, բայց նա էլ է պոկվում ու ջուրն ընկնում։ Նադիկյան ու Սվետլանան վախեցած ծվծվում են։ Վիտյան վազում է օգնության, բայց Գանյան ընկնում է։ Ջուրը ցայտում է այս ու այն կողմ, ճիչ է լսվում։

Տնակից դեպի ցանկապատ է շտապում Պոլինա տատը։

— Չարաճճինե՛ր,— ասում է նա,— դուք ջարդում

եք, իսկ վերանորոգող չկա... տեր աստված։— Պառավը ձեռքերը զարկում է իրար՝ տեսնելով, թե ինչպես Գանյան մագլցում է դեպի ափ։— Դե դուրս եկ, դո՛ւրս եկ։ Այստեղ խորը չի, գործի փորն էլ չի թրջում։— Իսկ հետո նախատում է Վիտյային։— Այդ դու ես երևի նրան ջուրը հրել։

— Ո՛չ, ազնիվ պիոներական խոսք, ես չեմ։ Ինքըն է ընկել։ Իսկ ես ուզում էի նրան օգնել...

— Տես շորերդ ինչպես ես թրջել, ի՞նչ կասի քեզ մայրդ։— Պոլինա տատը նայում է հարևան տան երկրորդ հարկի պատուհաններից մեկին։— Մարիա Պետրովնա՜։

Գանյայի մայրը հայտնվում է պատուհանում, տեսնում է ոտից-գլուխ թաց և կեղտի մեջ կորած աղջկան և դուրս է գալիս բակ։

— Ո՞ւմ ասացի, որ նրբանցքում խաղա և չարություն չանի, ո՞ւմ,— բարկացած հարցնում է նա։— Լռո՞ւմ ես։ Երեկ եմ կարել շորդ, իսկ հիմա ոնց որ լաթ լինի։ Եվ տախտակներն ես պոկել... դեռ տախտակները հայրդ կվերանորոգի։ Լավ, թող հայրդ տուն գա... Կորիր տուն և ամբողջ օրը տանը կնստես։

Ա՛յ, դրանից Գանյան ամենից շատ է վախենում. նստել տանը, երբ բակում այդքան լավ է։



Վիտյան ու Եվսեյկան կպտտվեն գետակի մոտ և նորից «հետախույզ» կխաղան, կամ մեկ այլ խաղ կհնարեն, իսկ Սվետլանան ու Նադիկան էլ չեն մնա նրանցից։ Նրանք ուրախ կլինեն, իսկ Գանյան...



Եվ ինչո՞ւ է նա բոլորի հետ կռվում, ոչ ոքի հետ իսկական ընկերություն չի անում։ Անգամ Փոքրիկ Սվետլանան իրեն չի սիրում։

Ձմեռը գրքերով ու դասերով զբաղված ժամանակ չէր լինում այդ մասին մտածել, իսկ հիմա, երբ ամառ է, օր-օրի ավելի վիրավորական է դառնում, որ երեխաները իր հետ խաղում են առանց բավականության։

Հագնելով իր հին զգեստը, Գանյան հոգոց է հանում և վերցնում, ծուլորեն թերթում է գիրքը, հետո բաց է անում պատուհանը և տեսնում, թե ինչպես Վիտյան ու Եվսեյկան աշխատում են ցանկապատի մոտ։ Իսկ որտե՞ղ են Նադիկան ու Սվետլանան։ Ահա նրանք մոտ են վազում և ինչ-որ բան են տալիս Վիտյային։ Պոլինա տատը ժպտալով մոտենում է Վիտյային, և Գանյան լսում է նրա խոսքերը.

— Նորոգի՛ր, նորոգի՛ր, տղաս։ Այդ հոլը կարծես չարաճճի կատվիկ լինի, իսկ դու, իսկույն երևում է, տնտես տղա ես։

Վիտյան ծալում է անդրավարտիքի փողքերը և ջուրն է մտնում։ Նրան հետևում է Եվսեյկան։

Եվ իսկույն մուրճն սկսում է թխթխկալ... «Նադիկյան ու Սվետլանան, երևի, մուրճն ու մեխերը բերեցին»,— մտածում է Գանյան, նայելով նրանց։ Ահա Եվսեյկան մեխում է տախտակները, իսկ Վիտյան կանգնած ջրի մեջ տախտակներն է բռնում, որպեսզի չընկնեն։

Ինչպե՜ս է ինքն էլ ուզում նրանց միանալ։ Էլի մեխեր կտաներ և մուրճ կտաներ։ Բայց մայրը կարգադրել է ամբողջ օրը տանը՝ նստել և ոչ մի գնով այլևս փողոց չի թողնի։

Գանյան երկար ժամանակ դիտում է, թե ինչպես են Վիտյան ու Եվսեյկան վերանորոգում ցանկապատը։ Ջարդված մասը վերանորոգված է, բայց երեխաները դեռ աշխատում են, ամրացնում են թուլացած տախտակները։ Նադիկյան ու Սվետլանան մտան Պոլինա տատի բակը։ Նրանք նույնպես օգնում են, Եվսեյկային մեխեր են տալիս։

Գանյան նախանձում է նրանց և բարկանում ինքն իր վրա։ Գուցե իսկապես ինքը պարծենկոտ է։ Գուցե և հող է։ Մեղավորն ինքն է, իսկ Պոլինա տատը վատ մտածեց Վիտյայի մասին։ Ո՛չ, հիմա արդեն Գանյան նրան Մազափունջ չի ասի։

Արևը թեքվեց տանիքի այն կողմը, և տան ստվերը պառկեց նրբանցքում։ Հոգնելով, Գանյան հեռանում է պատուհանից և նստում դիվանին։ Սենյակում լռություն է։ Մայրը ճաշը պատրաստել, դուրս է եկել բակ՝ Գանյայի լվացած հագուստը փռելու և դեռ չի վերադարձել։

Անճկատելիորեն Գանյան նիրհում է։

— Գա՜նյա, Գա՜նյա,— լսվում է փողոցից, և քունը վայրկենապես փախչում է նրանից։ Գանյան կախվում է պատուհանից երջանիկ ու գոհ։ Վիտյան, Եվսեյկան և աղջիկներն են, որ մոտեցել են տանը, գլուխները բարձրացրած, ցավակցորեն նայում են իրեն։

— Մայրդ շատ բարկացա՞վ,— հարցնում է Եվսեյկան։

— Ո՛չ, միայն խրատեց։ Վիտյա, դու թրջվել ես։

— Ոչի՜նչ, կչորանամ,— պատասխանում է Վիտյան։

— Հիմա ոչ մի տախտակ այլևս չի պոկվի։ Վաղը դուրս ենք «հետախույզներ» խաղալու։ Դուրս կգա՞ս։

— Ընը՛,— և Գանյային թվում է, թե նա կանգնած է ոչ թե երկրորդ հարկի պատուհանի մոտ, այլ այնտեղ, նրբանցքում, տան մոտ և այժմ բոլորովին այլ կերպ, բարեկամաբար պատասխանում է Եվսեյկային ու Վիտյային։ Իսկ Նադիկյան ու Սվետլանան նրան թվում են հավատարիմ ընկերուհիներ։

Ռուսերենից թարգմ.
Մ. ԽԱՉԱՏՅԱՆ

# ԾՈՒՅԼ ՏԱՃԱՏԸ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

— Տանա՛տ, Տանա՛տ,— կանչեց տատը։
Կամ Տանատը, կամ էս պատը։
Թռավ եկավ ամբողջ օրը,
Պատառոտեց հագի շորը։
Ու տուն եկավ մայրամուտին,
Գոռգոռալով ասաց տատին.
— Դե, շու՛տ արա, սոված եմ շատ,
Հաց տուր ուտեմ ու քնեմ, տա՛տ։

Դասերիդ դեռ ձեռք չես տվել,
Ո՞նց կարող ես հանգիստ քնել...
Տատը բերեց մեղր ու կարագ,
Թոռը կերավ արագ-արագ։
Բայց գիրքը հենց ձեռքը առավ,
Նստած տեղը քունը տարավ...
— Տանա՛տ, Տանա՛տ,— կանչեց տատը։—
Կամ Տանատը, կամ էս պատը։

# Չղջիկի ծնունդը

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԻՐԱԶ

Ամեն կողմից հին աշխարհի,
Ցեղերն ամեն թռչունների
Հավաքվեցին
Ու քեֆ բացին։
Այդ ժամանակ ծեր թամադան,
Թասը ձեռին արծիվ արքան
Տեսավ սևիկ մի արարած,
Որ նետի պես ընկավ հանկարծ
Ու սեղանի գլխին բազմեց
Ինքը մենակ մի ցեղ կազմեց։
Հայրը ճնճղուկ, իսկ մայրը մուկ,
Ի՞նչ արարած՝ մի հանելուկ։
Ու ծայր առավ փսփսուկը.
— Ո՞վ է,— ասին,— այս խենթուկը։
Որ թև ունի, բմբուլ չունի,
Չէ՛, մուկ է սա՝ մկան ցեղից...
Ականջները հանենք տեղից։
Մուկ է, ընկավ մեր թանի մեջ,
Փչացրեց մեր քեֆը պերճ։
Եվ սկսվեց կռիվ ու վեճ.
— Թե թև ունի, թռչուն է, վե՛րջ.
Էլ միք խոսի, թող քեֆ անի։
— Խմածն ի՞նչ է՝ մի թաս գինի.
Թողեք մնա, որբ է, թողե՛ք։
— Տո չէ, մուկ է, խփեմ, տղեք։
Բայց վեր կացավ արծիվ արքան.
— Թե թռչուն է սա իսկական,
Թող հարկը տա, գլխահարկը...
Այս որ լսեց մուկ-թռչնակը՝
— Ես թռչուն չեմ, ես մուկ եմ, մո՛ւկ.—
Ասաց, ելավ ու անաղմուկ
Թռավ, բայց իր ճանապարհին
Նորից մի քեֆ տեսավ սարին։
Մի արտի մոտ մկներն հարբած,
Դհոլ-զուռնով ու սրտաբաց
Հարսանիքն են անում մեկի.
Թե՛ հարսանիքն էր ամենքի...
Եվ անկոչը էլի անկոչ
Քեֆի նստեց ահադողդոջ.
Հարսի նման համր ու խեղճ.
Բայց վեճն ընկավ մկների մեջ.
— Տո չէ, ախպեր, թռչուն է դա...
Թևեր ունի, ինձ հավատա։
— Ախպեր, մուկ է, ականջ ունի,
Մուկ է և, տե՛ս, բմբուլ չունի.
Թող քեֆ անի, մուկ է մի խեղճ,
Սիրտը բացվի թող քեֆի մեջ.
— Մեր ցեղից է։
— Մեր ցեղից չէ.
Իր մայրը մուկ, հայրը ճնճղուկ՝
Մի նոր ցեղ են ծնել, ի՞նչ մուկ.
Եվ կռվում են ու դեռ վիճում.
— Մուկ է։
— Մուկ չէ։
— Հավք է, թռչուն։
Ու վեր ելավ մուկ թամադան
Քանալով գիրքն հարկամատյան.
— Թե որ մուկ է, թող հարկը տա՝
Գլխի հարկը չի տվել դա...
Այս որ լսեց անկոչ հյուրը,
Էլի գինուց ընկավ ջուրը.
— Չէ՛, ես մուկ չեմ, ես թռչուն եմ,
Մի հատիկի հարկ էլ չունեմ...
Եվ ճիչ հանեց թե՝ իմ տանից
Հարկ չունեմ, չի՛ք, հարկ չունեմ, չի՛ք.—
Եվ անունը այդ օրվանից
Ջղջիկ մնաց,—
Դառավ չղջիկ...
Որ գիշերով է դուրս գալիս,
Աստծուն անգամ հարկ չի տալիս։



Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ




Վ. ՏԱԼՅԱՆ

Ջերմաչափը թևի տակ՝
Աչոն պառկեց աչքը փակ.
Բայց հենց տատը դուրս գնաց,
Ինչ-որ մի բան կմկմաց,
Ջերմաչափը կամացուկ,
Թևի տակից նա ծածուկ
Հանեց, նայեց ու փարտեց,
Տվեց պատին ու ջարդեց:
Տատը վազեց վախեցած,
Նայեց նրան, նայեց ցած...
— Այս ի՞նչ արիր, ա՛յ աղջի.
Ջերմաչա՛փ է, հո խաղ չի:—
Ասաց, մի քիչ վշվշաց,
Զանչեց թոռին՝ վախեցած:
Իսկ սնդիկը խլվլան,
Ժիր գնդիկը պլպլան,
Արդեն վազել, վազվզել,
Հատակի ճեղքն էր մտել:
Աչոն լացեց.—Ա՛յ տատի,
Արի պատժիր այս պատին...
Բա որ կուլ տա մկնիկը
Այդ թունավոր սնդիկը...
— Դե թող չքվեն մկները,
Ցավը բռնի բկները...
Թշնամի են ամեն տան՝
Կրծոտում են ամեն բան...
Իսկ մեղավոր այս պատը
Կասի՝ թե ով էր վատը:



# ՕԴԱՊԱՐԻԿ

Կիրակի էր: Թաղի բոլոր երեխաները հավաքվել էին Երկար Մակարենց ընդարձակ բակը և հետաքրքրությունից վառվող աչքերով նայում էին նրանց տան կողմը: Նրանք շատ բան էին լսել Մակարի ու Խոստիկի մասին, բայց այս մեկին չէին հավատում: Եվ ինչպե՞ս հավատային: Ախր լսվա՞ծ բան է... Բոլորի աչքի առաջ Մակարն ու Խոստիկը բաց էին թողնելու իրենց պատրաստած օդապարիկը, որն իսկականի պես պիտի վեր բարձրանար:

Ուղիղ ժամը երեքին բացվեց Մակարենց դուռը, և պատշգամբ դուրս եկան անբաժան ընկերները: Մակարը գլխից վեր, բարձր պահել էր մի մեծ, սպիտակ գունդ: Խոստիկը մի ձեռքով բռնել էր ժանգոտած ու անտակ դույլը, իսկ մյուսով՝ տաշեղով լցված հնամաշ զամբյուղը:

Նրանք դանդաղ, հանդիսավոր քայլերով իջան սանդուղքներից և, ճեղքելով երեխաների բազմությունը, գնացին բակի կենտրոնը: Խոստիկը անտակ դույլը շուռ տվեց գետնին և մի քանի տաշեղ գցելով մեջը՝ [illegible] օդապարիկից կապած երկար թելը ամրացրեց Մակարի ձախ ոտքին և երկուսով օդապարիկը բերանն ի վար կախեցին կրակի վրա:

ԻՆՉՈՒ Է

Հավաքվածները, որ ուշադրությամբ հետևում էին նրանց ամեն մի շարժումին, նոր միայն նկատեցին օդապարիկի վրա նկարված կարմիր աստղը և «ԵՄՊԽ» մակագրությունը, այսինքն՝ Երկար Մակար և Պստիկ Խոստիկ:

Օդապարիկը կրակի վրա քիչ պահելուց հետո, Խոստիկը բարձր ձայնով հայտարարեց.

— Ուշադրությո՜ւն, ուշադրությո՜ւն... մե՛կ, երկո՛ւ, երե՜ք.—և միաժամանակ բաց թողեցին ձեռքերը:

Օդապարիկն սկսեց դանդաղ վեր բարձրանալ:

— Ուռա՜,—ծափ տալով աղաղակեցին երեխաները:

— Կեցցե՜ն հնարագետ Երկար Մակարն ու Պստիկ Խոստիկը.—ամբողջ ուժով գոռաց շեկլիկ Համոն և գլխարկը մի քանի անգամ վեր-վեր թռցրեց:

Մակարի ու Խոստիկի ուրախությանը չափ չկար. նրանք հույս չունեին, թե փորձարկումն այդպես հաջող կանցնի:

— Մակա՛ր, ոտքիցդ արձակիր թելը, թե չէ քեզ էլ հետը երկինք կտանի,—վախենալով ասաց նրա փոքր քույրը՝ Սոնան:

Մակարը ծիծաղեց քրոջ միամտության վրա:

— Չի տանի, էդքան ուժ չունի, համ էլ միջի օդը հիմա կսառի, ու ցած կիջնի:

Մի քանի րոպե օդում մնալուց հետո օդապարիկն սկսեց կամաց-կամաց ներքև իջնել: Մակարն ու Խոստիկը զգուշությամբ բռնեցին և տարան պատշգամբ: Մակարը բարձրացավ սեղանի վրա և օդապարիկը կախեց առաստաղին խփած մեխից: Հետո նրանք հոգնած մարդու պես ընկան պատշգամբում դրված երկար նստարանին:

Երեխաները մեկ-մեկ վեր բարձրացան ու շրջապատեցին նրանց: Նրանք խնդրում էին, որ Խոստիկն ու Մակարը իրենց էլ օդապարիկ պատրաստել սովորեցնեն:



Նկ. Ա. ԶԱՔԱՐՅԱՆԻ

Մակարը խորհրդավոր նայեց ընկերոջը: Խոստիկը հասկացավ այդ հայացքի իմաստը և նրա ականջին փսփսաց.

— Իհարկե, պիտի սովորեցնենք, Մակար ջան, եթե չսովորեցնենք, դպրոցում մեզ խայտառակ կանեն:

## ԹՌՉՈՒՄ

— Ինչո՞ւ,—զարմացավ Մակարը:

— Որովհետև պիոները պարտավոր է ոչ միայն այդպիսի բաներ պատրաստել իմանալ, այլև դրանք սովորեցնել իր ընկերներին,—բացատրեց Խոստիկը:

— Ճիշտ ես ասում,—համաձայնեց Մակարը և սկսեց.—օդապարիկ պատրաստելը դժվար չէ: Մեկ ու կես մետր տրամագիծ ունեցող օդապարիկ պատրաստելու համար հարկավոր է ծխախոտի բարակ թղթից կտրել 2 մ 40 սմ երկարությամբ 12 միանման շերտեր:—Եվ նա ցույց տվեց մի մեծ թղթի վրա կատարած այս գծագիրը:—Հետո պետք է այդ շերտերը միմյանց սոսնձելով կլոր գունդ ստանալ: Դրա համար լավ կլինի նախ կպցնել զույգ-զույգ, հետո նոր բոլորը միասին: Կարելի է շերտերը տարբեր գույնի անել:

— Հա՛, տղերք,—նրան ընդհատեց Խոստիկը.—չլինի՞ թե գրասենյակային սոսինձով կպցնեք, թուղթը կփչանա: Պետք է ատաղձագործական, կազեինային կամ դեքստրինի սոսինձ:

— Հետո,—շարունակեց Մակարը,—նույն ծխախոտի թղթից պետք է կտրել թեյի ափսեի մեծության մի կտոր և սոսնձել գնդի վերևի մասին, որտեղ իրար են միանում շերտերի սուր ծայրերը: Իսկ ներքևի մասը դրսից ու ներսից պետք է սոսնձել հաստ թղթից պատրաստած լայն օղակներով և վրան թելից սարքած օղակ կպցնել՝ թել կապելու համար: Ա՛յ, այսպես,—և նա ցույց տվեց մի այլ նկար: Օդապարիկը պատրաստ է: Չորանալուց հետո կարելի է բաց թողնել:

— Մակար, ինչո՞ւ նախքան բաց թողնելը օդապարիկը կախեցիք կրակի վրա,—հարցրեց Հրանտը:

— Եթե չկախեինք՝ չէր բարձրանա:

— Ինչո՞ւ:

— Երբ կախեցինք կրակի վրա, տաք օդ լցվեց օդապարիկի մեջ և նա դարձավ շատ թեթև, չէ՞ որ տաք օդը ավելի թեթև է: Չհասկացա՞ր, ուրիշ բան ասեմ, եթե մի կտոր խցան իջեցնենք ջրի տակ ու բաց թողնենք, նա անմիջապես վեր կբարձրանա, չէ՞: Դա նրանից է, որ խցանը ավելի թեթև է, քան նրան դուրս մղող ջուրը: Իսկ եթե մի քար գցենք ջուրը, անմիջապես կսուզվի, որովհետև քարն ավելի ծանր է, քան նրան դուրս մղող ջուրը: Այդպես էլ օդապարիկը: Առաջ օդապարիկների մեջ տաք օդ էին լցնում: Այդպիսի օդապարիկները երկար ժամանակ չէին կարող մնալ օդի մեջ և հենց որ միջի օդը սառչում էր՝ ցած էին իջնում: Դրա համար էլ օդապարիկներն սկսեցին լցնել թեթև գազով՝ ջրածնով:




— Դուք գիտե՞ք, թե երբ են հնարել օդապարիկը,—նորից հարցրեց Հրանտը, որն այսօր ավելի համոզվեց, թե ինչքան շատ բան են սովորել Մակարն ու Խոստիկը դպրոցի «Հմուտ ձեռքեր» խմբակում: Նա ներքուստ մեղադրում էր իրեն, որ ինքն էլ չգնաց նրանց հետ:

## ՕԴԱՊԱՐԻԿԸ

— Օդապարիկով առաջին թռիչքը տեղի է ունեցել 1731 թվականին, Ռյազանում: Ինքնուս գյուղատարբար Կրյակուտնոյը պատրաստել էր մի մեծ պարկ, մեջը տաք օդ լցրել և նրանով թռել ծառերից մի քիչ բարձր: Իսկ դրանից 52 տարի հետո ֆրանսիացի գյուղատարբարներ Ժոզեֆ և Էտյեն Մոնգոլֆյե եղբայրները կառուցեցին աշխարհում երկրորդ օդապարիկը, որի տրամագիծը հավասար էր 13 մետրի: Հետո օդապարիկ պատրաստելը դարձավ շատ սովորական մի բան:









— Տղա՛ներ, մյուս կիրակի օրը նշանակում եմ օդապարիկների մրցություն,— հայտարարեց Խոստիկը։— Բոլորդ մի-մի օդապարիկ կսարքեք և ուղիղ ժամը 3-ին կլինեք այստեղ, եթե քամի չեղավ՝ կսկսենք մրցությունը։ Ում օդապարիկը շատ մնա օդում, նա էլ կլինի հաղթողը։ Համաձա՞յն եք։

— Համաձայն ենք, համաձայն,— միաբերան աղաղակեցին երեխաները և ուրախ-ուրախ տուն գնացին։

Մակարն ու Խոստիկը նայեցին միմյանց ու գոհ ժպտացին։

## „ՊԻՈՆԵՐԻ" ՄՐՑԱՆԱԿՆԵՐԸ

**Մեր ամսագրի խմբագրական կոլեգիայի որոշմամբ՝ այսուհետև յուրաքանչյուր տարվա հունվարին մրցանակներ կտրվեն ամսագրի անցած տարվա 12 համարներում լույս տեսած լավագույն ստեղծագործություններին։**

*Սահմանված են հետևյալ մրցանակները.*

*Լավագույն պատմվածքի համար՝* 1000 ռ.
*Լավագույն բանաստեղծության համար՝* 500 ռ.
*Լավագույն շապիկի համար՝* 1000 ռ.
*Լավագույն նկարազարդման համար՝* 500 ռ.

**Մրցանակ ստացած հեղինակները կստանան նաև «ՊԻՈՆԵՐ» ամսագրի պատվո վկայագրեր։**



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին և չորրորդ էջերի ձևավորումը՝ Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

**Այս համարի հետ տրվում է անվճար հավելված հոկտեմբերիկների համար։**


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍՍՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.։

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
*Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2-44-83, 2-39-06։*

*ՎՖ 02347. Պատվեր 180։ Տպաքանակ 7000։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 4 III 1959 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։*

Գինը 2 ռ.

# ԱՅՍՏԵՂԻՑ ԱՅՆՏԵՂԻՑ

## ՄԱՐԴԱԿԵՐ ԱՌՅՈՒԾՆԵՐ

Գյուղի ծայրին կանգնած փոքրիկ խրճիթից, զգույշ կերպով դուրս է նայում մի նեգր: Նրա դեմքը սարսափից աղավաղված է: Նա վախեցած նայում է չորս կողմը, ունկնդրում, ապա մի սուր ճիչ արձակում: Գյուղը կենդանանում է: Հայտնվում են երկար նիզակներով զինված տղամարդիկ, կանայք, երեխաներ:

Ատիճանաբար գյուղի կյանքը սովորական հունի մեջ է մտնում: Բայց այդքան հեշտ չէ մոռանալ այն, ինչ կատարվել է գիշերը: Արդեն քանիերորդ անգամ գյուղի բնակիչները դառնում են առյուծների հարձակման զոհեր:

Վերջին ժամանակներս առյուծների հարձակումը Անկոլայի նեգրական գյուղերի վրա սովորական երևույթ է դարձել: Մեկ տարվա ընթացքում զոհվել է 43 մարդ:

Այդ տարօրինակ երևույթի պատճառն այն է, որ շատ են քչացել զեբրերն ու անտիլոպները, որոնք առյուծների սիրած կերակուրն են:

Դրանից բացի, ասում են, որ առյուծը, մի անգամ ճաշակելով մարդկային միսը, ուրիշ կենդանու վնաս չի տալիս: Պատահում է, որ հարձակվելով կովերի նախրի վրա, առյուծը կենդանիներին ձեռք չի տալիս, բայց որոնում է մարդկանց:

Մի անգամ երկու մարդակեր առյուծ ամբողջ երեք շաբաթ կանգնեցրին Քենիայից Ուգանդա տանող երկաթուղու շինարարությունը:

Մի քանի օրվա ընթացքում 23 նեգր դարձավ նրանց զոհը:

Մյուսներն հրաժարվեցին աշխատել այնքան ժամանակ, քանի դեռ երկաթե ցանկապատ չէր քաշվել ճանապարհի ամբողջ երկայնքով:

Ուգանդայի իշխանությունները ստիպված էին կոչով դիմել տարբեր երկրների որսորդներին, մասնակցելու մարդակեր առյուծների բնաջնջման գործին:

Վերջերս տեղի ունեցավ մի ողբերգական դեպք: Երկաթուղային վագոնում դարան էին մտել Եվրոպայից եկած երեք որսորդ: Ամբողջ գիշերը վագոնում նստած՝ նրանք սպասում էին առյուծներին: Առավոտյան երեքն էլ ննջեցին: Այդ ժամանակ թփուտից դուրս եկավ մի առյուծ, անձայն մոտեցավ վագոնին, թաթով բաց արեց դուռը և թռավ ներս: Որսորդները զարթնեցին, բայց արդեն ուշ էր: Առյուծը բռնեց նրանցից մեկին և դուրս թռավ: «Ահա թե ինչու,— հայտարարում է Ուգանդայի գլխավոր անտառապետի օգնական Օուէնը,— մեզ հարկավոր են որսորդներ, որոնք սպանեին առյուծներին, և ոչ թե նրանց համար պատառ դառնային»:

## ՋՈՐ ԱՆՁՐԵՎ

Երկրագնդում կան այնպիսի տեղեր, որտեղ անձրևի տակ կարելի է չոր մնալ: Այդ անհավանական է թվում, բայց այդպիսի սովորական երևույթ նկատվում է շատ անապատներում: Բանն այն է, որ այդ վայրերի կլիման խիստ մայրցամաքային է, իսկ օդը՝ չափազանց չոր: Ամպերը հավաքվում են երկնքում, և ավելի քիչ է անձրև տեղում:

Իսկ երբ անձրևում է, ապա նրա կաթիլները գետին չհասած՝ գոլորշիանում են օդում: Կանգնելով անձրևի տակ, դուք չոր եք մնում: Դա էլ հենց չոր անձրևն է:

## ԹԻԹԵՌ-ՀՍԿԱՆԵՐԸ

Ավստրալիայում և Նոր Գվինեայում պատահում են հսկայական թիթեռներ, որոնց մեկ թևի երկարությունը հասնում է մինչև 13 սանտիմետրի: Այդպիսի հսկային ցանցով բռնելը համարյա անհնարին է: Դրա համար էլ գիտնականները նրանց որսում են ավազով լցված հրացաններով: Հյուսիսային Ավստրալիայում նրանց որսում են աղեղի և նուրբ նետերի օգնությամբ: Թիթեռների միսը պապուասներն ուտում են:

## ՉՈՐՍ ՀԱՐՅՈՒՐ ՏԱՐԵԿԱՆ ԿՐԻԱՆ

Ֆրանսիայի ատլանտյան ծովափին ձկնորսները բռնել են մի հսկայական ծովային կրիա, որը կշռում է 430 կիլոգրամ: Մասնագետների կարծիքով կրիան ծովում ապրել է ավելի քան 400 տարի:

